# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

Ե.

## ՆՈՐԱԳՈՅՆ ԱՂԲԵՐՔ

## ՄՈՎՍԻՍԻ ԽՈՐԵՆԱՑՒՈՅ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1893.

# ՆՈՐԱԳՈՅՆ ԱՂԲԵՐՔ



# ՄՈՎՍԻՍԻ ԽՈՐԵՆԱՑՒՈՅ

ՔՆՆԱԴԱՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ



ԳՐԵՑ

Ա. ԳԱՐԻԷՐ

*Ուսուցչապետ յՈւսումնարանի Արեւելեան Կենդանի Լեզուաց, Օժանդակ-վարիչ Ուսումնարանի Բարձրագոյն Ուսմանց ի Փարիզ*

ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆ





ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1893.

# ԱԶԴ

*Յաջորդ գրքոյկս թարգմանութիւն է ուսուցչապետ Ա. Գարիէրի յօդուածներուն, որ ուսումնասիրութիւնք են Մ. Խորենացւոյ աղբերաց նկատմամբ եւ որոնք գաղղիերէն բնագրաւ եւ հայերէն թարգմանութեամբ լոյս տեսան նախնաբար "Հանդէսի„ մէջ[1]: Յիշեալ յօդուածներուն գաղղիերէն մասը մօտերս գրքուկի ձեւով լոյս տեսաւ Միաբանութեանս տպարանէն շքեղ թղթի վրայ:[2] Այժմ ի լոյս կը հանենք նաեւ հայերէն թարգմանութիւնն իբրեւ մասն "Ազգային Մատենադարանի„: Թարգմանութեանս մէջ առնուած է նաեւ ուսուցչապետ հեղինակին գրքուկին սկիզբն աւելցուցած Յառաջաբանը:*

Հ. Յ. Տ.

---

[1] *Հմմտ. "Հանդէս Ամս.„ 1892, Թ. 8, էջ 250–253, Թ. 12, էջ 373–379. 1893, Թ. 4, էջ 116–120, Թ. 5, էջ 134–140 եւ Թ. 6, էջ 178–186:*

[2] **Nouvelles Sources de Moïse de Khoren, études critiques par A. Carrière. Vienne, imprimerie des Mechitharistes 1893. 8o VIII pp. 56.**

Յաջորդ էջերը Մովսէս Խորենացի պատմագրին մէկ կամ շատ մ’աղբերաց վրայ լիակատար, լաւ կարգաւորուած եւ յղկուած յարդարուած ուսումնասիրութիւն մը չեն ընծայեր: Ուսումնաթերթի պարզ յօդուածներ են՝ որոնց ասպնջականութիւն շնորհել հաճած է Վիեննայի “Հանդէս Ամսօրեայն„, եւ որոնք այսօր այս նոր ձեւին ներքեւ լոյս կը տեսնեն՝ առանց փոփոխութիւններ կրած ըլլալու: Չեմ ջնջած քանի մը կրկնութիւնները. Թողուցած եմ մինչեւ անգամ առաջին յօդուածին մէջ քանի մը վճիռներ, որոնք այլ եւս չեն յարմարիր յետոյ ստացուած հետեւութեանց հետ: Ինծի ա՛յնպէս երեւցաւ որ օգտակարութիւն մ’ունի ընթերցողն ալ կարգաւ տանիլ այն ճամբուն, որով ես իսկ ընթացայ: Արդեամբք ալ՝ իմ հետազօտութեանցս սկիզբն եղած ժամանակ՝ ամենեւին միտքէս չէր անցներ թէ մինչեւ ու՛ր զիս պիտի տանին անոնք: Որ չափով որ տեղեկատու նորանոր միջոցներ տրամադրու-

թեանս տակ դլրուեցան, այն չափով ալ իմ տեսութեանս կերպը եղանակաւորուեցաւ, մինչեւ որ ի վերջոյ հասայ այնպիսի եզրակացութեանց, որոնց կարեւորութիւնը — յօժարութեամբ կ՚ըսէի՝ ծանրութիւնը — ոեւէ հայագէտի աչքէն պիտի չվրիպի:

Երկու տարի կայ որ, երբ կը գրէի Մովսիսի Խորենացւոյ եւ Նահապետաց Ազգաբանութեանց[1] վրայ գրքոյկ մը, խնդիրը սերտիւ ուսումնասիրելով դեռ եւս կը կարծէի Հայոց Պատմութեան յօրինման ժամանակը 460 եւ 480 տարեաց մէջ դնել: Այս կէտս գրեթէ աւանդական կարծեաց հետ կը նոյնանար: Քիչ մ՚ետքը բառական թարգմանութիւն մը գտայ այս գործքին մէջ Ս. Սեղբեստրոսի Վարուց մէկ կտորին, որուն յունարէն թարգմանութիւնը Ե դարու վերջին կամ Զ դարու առաջին տարիներէն է: Ուստի այս վայրկենէս ի վեր այլ եւս չէի կրնար զՄովսէս Խորենացի Ե դարու հեղինակ մը նկատել: Բայց սխալած էի ընդունելով թէ Մ. Խորենացի այն յիշեալ կտորը յունարէնէն թարգմանած ըլլայ: Շուտով առիթ ունեցայ ճշդելու որ այն յիշատակարանին արդէն գոյութիւն ունեցող հայերէն թարգմանութիւն մ՚ընդօրինակած է պարզապէս: Ուրեմն Հայոց Պատմութեան յօրինման

[1] A. Carrière, Moïse de Khoren et les Généalogies patriarcales. Paris 1891.

ժամանակը լիուլի իրաւամբք Զ դարուն մէջ քանի մը տարի ալ յետս կը մղուէր:

Բայց այստեղ ալ պէտք չէի կանգ առնուլ: Ս. Սեղբեստրոսի Վարուց յիշեալ Հայերէն Թարգմանութիւնը Սոկրատայ Եկեղեցական Պատմութեան Է դարու վերջին տարիներէն եղած Հայերէն Թարգմանութեան մը ձեռագրաց սկիզբը կը գտնուէր: Ա՛յնչափ անհնար կ'երեւար ինծի Հայոց Պատմութեան շարադրութեան ժամանակը մինչեւ այս ժամանակամիջոցը յետս մղելն որ Սոկրատայ Պատմութիւնն ուսումնասիրել զանց ըրի, երբ ի Վենետիկ ձեռքս ունէի անոր ձեռագիրը: Միայն աւելի ետքը քանի մը նշաններ ենթադրել տուին ինծի որ Մ. Խորենացի այն երկու գրութիւնքն ալ միեւնոյն ժամանակ գործածած ըլլալու է. եւ Սոկրատայ շատ մը կարեւոր կտորները՝ զորոնք ազնուաբար ինծի հաղորդեց Վ. Հ. Բ. Սարգսեան Վարդապետ, ուսումնասիրելով՝ իմ ենթադրութիւնս լիովին հաստատուեցաւ: Այժմ որ պէտք է ա՛յլ եւս Սոկրատայ Հայերէն Թարգմանութիւնը Մովսիսի Խորենացւոյ աղբիւրներուն կարգին մէջ դասել, յիշեալ Թարգմանութեան տարեթիւն ի հարկէ իսկ իրեն ետեւէն կը ձգէ կը տանի Հայոց Պատմութեան յօրինման ժամանակն, որ Ը դարէն յառաջ չի կրնար ըլլալ:

Ներկայ մատենկանս այլեւայլ յօ-

ղուածներն իմ հետազօտութեանցս յաջորդաբար առած փոփոխմունքը պարզելու նուիրուած են:

Վերջինն՝ Մովսէս Խորենացի եւ Պարթեւաց ծագումը, թէեւ բոլորովին անկախ է նախընթացներէն, սակայն խուզարկութեանց միեւնոյն կարգին կը վերաբերի: Այս ալ Մովսիսի Խորենացւոյ աղբերաց քննադատութեան մէկ գլուխն է:

Ա. Գ.

Փարիզ, 10 Մայիս 1893:



# ՆՈՐԱԳՈՅՆ ԱՂԲԵՐՔ

# ՄՈՎՍԻՍԻ ԽՈՐԵՆԱՑՒՈՅ

---

## Ա.

Շատ բան գրուած է արդէն Մ. Խորենացւոյ գործածած աղբիւրներուն վրայ, եւ սակայն դեռ եւս սպառած լմնցած չէ այն ամէնն ինչ որ կարելի է ըսել այս խնդրին նկատմամբ: Նոյն իսկ մեծապէս հետաքրքրական է վերստին ձեռնարկել քննելու ամէնն՝ ինչ որ ալ եղած է ցայժմ: Սակայն այս չէ մեր այսօր ձեռնարկածը. Թողլով մէկդի ինչ որ ըսուած է այս նկատմամբ ցայսօր, մեր նպատակն է հայագիտութեամբ զբաղողներուն մտադրութիւնը հրաւիրել կարգ մը յիշատակարանաց վրայ՝ որոնց ոչինչ մտադրութիւն եղած է, եւ զոր մեզի կ՚երեւայ թէ գործածած է Մ. Խորենացի՝ շատ աւելի քան որչափ առաջին տեսութեան կ՚երեւայ: Մեր խօսքն է սրբախօսական յիշատակարանաց վրայ, այսինքն՝ Վարք Սրբոց, Վկայաբանութիւնք Մարտիրոսաց եւն. որոշիչ օրինակաւ մը պիտի ցուցընենք թէ Մ. Խորենացի գործածած է զասոնք, եւ անշուշտ այս է պատճառն որ այնչափ շատ սխալմունք ըրած է Խորենացի հռովմէական պատմութեան նկատմամբ:

Այսպէս օրինակի համար Բ Գրոց ՁԳ գլուխը կը ցուցընէ այնպիսի պատմագիր մ՚որ շատ սխալ տեղեկութիւններ առած է: Բառ մ՚իսկ ճիշդ չկայ Կոստանդիանոսին՝ Դիոկղետիանոսի Մաքսիմինա դստեր հետ ամուսնանալուն նկատմամբ ըսուածներուն մէջ, եւ այն պարագայք՝ որոնց մէջ կ՚ըսէ թէ այս ինքնակալս քրիստոնէութեան դարձաւ, ոչ

*միայն բոլորովին հակառակ են մեր այլուստ գիտցածին, այլ նաեւ յայտնապէս զրուցական նկարագիր մ'ունին։ Յայտնի է ուրեմն որ Խորենացւոյ այն աղբերքն՝ ուստի տեղեկութիւնքս քաղած է, պակասաւոր էին։ Արդ սոյն ՁԴ գլխոյ գոնէ մէկ մասին համար գտածենք այն յիշատակարանն՝ զոր Խորենացի աչաց առջեւ ունեցած է։ Եթէ համեմատուի իւր պատմածն այն յոյն բնագրին հետ, զոր հոս կը դնենք, կարելի չէ տատամսիլ ընդունելու որ հայ բնագիրը մերթ բառական թարգմանութիւն է եւ մերթ համառօտութիւն յունականին։*

| (Vita Silvestri.) | (Խոր․ Բ․ գլ․ ՁԴ․) |
| --- | --- |
| *Κωνσταντῖνος τοίνυν Μαξιμίναν τὴν Διοκλητιανοῦ τοῦ βασιλέως θυγατέρα ἔχων γυναῖκα,* | *Բայց յետոյ հրապուրեալ ի կնոջէն իւրմէ Մաքսիմինայ, ի դստերէն Դիոկղետիանոսի, յարոյց հալածանս եկեղեցւոյ.* |
| *καὶ πολλοὺς τῶν Χριστιανῶν ἀνελῶν, ἐλεφαντικῇ λέπρᾳ καθ' ὅλου τοῦ σώματος πληγεὶς ἐτραυματίσθη.* | *եւ զբազումս վկայեալ, ինքն եղեփանդական բորոտութեամբ ըստ բոլոր ընկալեալ մարմնոյն ապականեցաւ վասն յանդգնութեանն։* |
| *Τούτῳ ὁπηνίκα οἱ μάγοι οἱ λεγόμενοι Ἀρίολοι, καὶ οἱ ἐπάοιδοι, καὶ οἱ Μαρσικοὶ ἰατροί, οὐ μὴν ἀλλὰ καὶ οἱ ἐκ Περσίδος ἀχθέντες ἔμπειροι τῆς ἰατρικῆς ἐπιστήμης, οὐδὲν ἠδυνήθησαν συμβαλέσθαι αὐτῷ·* | *Զոր ոչ կարացին բուժել արիողական կախարդքն եւ մարխակեան բժիշկքն. յաղագս որոյ յղեաց առ Տրդատ՝ առաքել նմա դիւթս ի Պարսից եւ ի Հնդկաց. սակայն եւ այնք ոչ հասին նմա յօգուտ։* |
| *ἀνεφάνησαν δέ τινες ἱερεῖς τοῦ Καπετωλίου λέγοντες· Ὀφείλει γενέσθαι κόλυ[μ]βος, ἤγουν κολυμβήθρα ἐν τῷ Καπετωλίῳ,* | *Զոր եւ քուրմք ոմանք ի դիւաց խրատուէ հրամայեցին* |
| *καὶ πληρωθῆναι αὐτὴν ἀφθόρων παιδίων αἵματος,* | *բազմութիւն տղայոց զենուլ յաւազանն եւ ջերմ արեամբ* |
| *ἐν ᾧ ζέοντι ἔτι καὶ ὡσανεὶ καπνίζοντι λουσάμενον αὐτὸν δυνηθῆναι καθαρισθῆναι.* | *լուանալ եւ ողջանալ.* |
| *. . . . Ἀπήντησαν αὐτῷ αἱ μητέρες . . . κωκυτοὺς καὶ ἀλαλαγμοὺς ἀφιεῖσαι . . .* | *որոյ լուեալ՝ զլալիւն մանկանցն հանդերձ մարցն կականմամբք, գթացեալ մար-* |

καὶ φιλάνθρωπον ἦθος ἀναλαβών . . . . Προκρίνων τῆς ἐμαυτοῦ ὑγιείας τὴν τῶν ἀφθόρων παιδίων σωτηρίαν. Ταύτῃ τοίνυν τῇ νυκτὶ ὀπτασίαν ὁρᾷ, ἐν ᾗ ἐφάνησαν αὐτῷ οἱ ἅγιοι ἀπόστολοι λέγοντες· Ἡμεῖς ἐσμὲν Πέτρος καὶ Παῦλος οἱ πεμφθέντες παρὰ τοῦ Θεοῦ δοῦναί σοι σωτηρίας σύμβολον, ἵνα πέμψῃς πρὸς Σίλβεστρον τὸν ἐπίσκοπον, ὅς, τὸν διωγμὸν τὸν σὸν δεδοικὼς ἐν τῷ σπηλαίῳ τῷ ὄντι ἐν τῷ Σοραπτινῷ ὄρει κρύπτεται.

դաստիրեաց, ընոցայն լաւ վարկուցեալ քան զիւրն փրկութիւն։

Յաղագս որոյ զփոխարէնն յԱստուծոյ ընդունի, յանրջական տեսութիւն Առաքելոցն առեալ հրաման

որբիլ լուացմամբ ․կենսատու աւազանին ի ձեռն Սեղբեստրոսի եպիսկոպոսի Հռոմայ,
Որ ի նմանէ հալածանացն թագուցեալ էր ի Սորակտին լեառն.
յորմէ եւ աշակերտեալ հաւատաց, զբռնաւորսն ամենայն բառնալով Աստուծոյ յերեսաց նորա, որպէս համառօտ ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս։

Թէ այս երկու բնագիրք ինչ յարաբերութիւն ունին՝ երկբայութեան տակ չի կրնար ըլլալ։ Ոչ միայն ամբողջ պատմութեան կապը նոյն է, այլ նոյն իսկ այլեւայլ բացատրութեանց նոյնութիւնն ամէն տարակոյս կը բառնայ։ "Արիողական„ եւ "մարսիկեան„ բառերն՝ որոնց վրայ այնչափ վիճուեցաւ, այժմ վերջնականապէս իրենց մեկնութիւնը կը գտնեն յունարէն ἀρίολος եւ μαρσικός բառերով։ Աւելին եւս կայ․ Հայոյն "Սորակտիոն լեառն„ ըսածը կը համապատասխանէ յունին ἐν τῷ Σοραπτινῷ[1] ὄρει բացատրութեան․ ուր Մ․ Խորենացւոյ շատ մը ձեռագիրք "Սորաղտիոն„ կը կարդան փոխանակ "Սորակտիոն„ որ սրբագրութիւն մըն է․ Նոյն յոյն բնագրին սարի թարգմանութիւնն ալ նմանապէս ․ܣܘܪܦܛܝܣ ունի։

Այս ἀρίολος եւ μαρσικός բառերն արդէն թոյլ կու տան կարծելու որ այն բնագիրն՝ ուստի

[1] Լատիններէն բնագրին ունի Syraptis։

առնուած էին՝ լատիներէն բնագրէ մը ծագած էր։ Արդեամբք ալ մեր ի վկայութիւն կոչածը մաս մըն է Վարք Երանելւոյն Սեղբեստրոսի Հռովմայ Հայրապետի գրութեան, որ նախ լատիներէն է գրուած, ապա թարգմանուած յունարէն եւ այս ձեւով հրատարակուած ի հաւաքածոյս Քոմպեֆիսիսի. (Combefis, Illustrium Christi Martyrum lecti Triumphi, Parisiis 1660, 8° p. 258 եւն.։)

Այն որ Մ. Խորենացի փոխառութիւն մ'ըրած է Վարք (կամ Վկայաբանութիւն) Սեղբեստրոսի գրութենէն՝ կարեւոր կէտ մըն է իւր պատմութեան յօրինման ժամանակը ճշդելու համար։ Իմ մեծահռչակ պաշտօնակցիս Տիւշէնի (M. l'abbé Duchesne, Le Liber Pontificalis, texte, introduction et commentaire, I, p. CXI եւն) ըրած հմտական հետազօտութեանց համեմատ՝ Վարք Սեղբեստրոսի գրութեան լատինական խմբագրութիւնը Ե դարու վերջին տարիներէն յառաջ չի կրնար ըլլալ. ուստի եւ յոյն թարգմանութիւնն ամենէն կանուխ Զ դարուն առաջին տարիներն եղած պիտի ըլլայ։ Այն ատեն պէտք է թողուլ Խորենացւոյ Հայոց Պատմութեան յօրինման նկատմամբ աւանդեալ տարեթիւը, եւ նոյն գրոց յօրինումն մինչեւ Զ դար իջեցընել։ Չենք կրնար ըսել թէ այս կտորը յետամուտ յաւելուած մըն է, այնու որ Խորենացւոյ գրութեան կերպն ու ոճը կը մատնէ մեծապէս։

Բ. Գրոց ԶԸ գլուխն ալ պատմական սխալներ ունի, որ կը մեկնուի այնու որ այս տեղ ալ Խորենացի փոխառութիւն ըրած է ուրիշ որբախօս աղբիւրէ մը՝ Վարք Սրբոյն Բասիլիոսի Ամասիացւոյ (Acta S. Basilei) (Հրտ. Սուրիոս։)[1] Ասկէ կրնար առնուլ

[1] Հմմտ. Կէօրէս, Քննադատական հետազօտութիւնք Լիկինեան հալածմանց։ Ենա, 1875։ — (Goerres, Krit. Untersuchungen über die Licinianische Christenverfolgung. Jena, 1875.)

Հայ պատմագիրը թէ Լիկինիոս ստորակարգեալ էր Կոստանդիանոսի, որ անճիշդ է. թէ Ս. Բասիլիոս վկայած է մարտիրոսութեամբ այն դիպաց առթիւ որ կը պատմուին ի Վարս Սրբուհւոյ Գղափիւրայ, թէ Լիկինիոս աքսորուած ըլլայ ի Գաղղիա եւն։ Դժբախտաբար Բասիլիոսի վկայաբանութիւնը մեզի բաւական նորագոյն ժամանակի լատիներէն թարգմանութեամբ միայն հասած է եւ գոնէ ըստ իմ տեղեկութեանս յունարէն բնագիրը դեռ հրատարակուած չէ։[1] Ասոնք ալ դեռ քննադատօրէն հետազօտուած չըլլալով՝ կարելի չէ որոշել թէ ե՞րբ նախ յօրինուած են, ուստի եւ օգուտ մը չունին մեզի Մ. Խորենացւոյ գրութեան ժամանակն որոշելու համար։ Սակայն պէտք է բացարձակապէս մերժել Կէօրէսի ենթադրութիւնը՝ թէ Մովսէսի գիրքն եղած ըլլայ աղբիւր Ս. Բասիլիոսի Ամասիացւոյ վկայաբանութեան խմբագրին։

Այժմ գրութիւնս կնքելով կը կրկնեմ արդէն ըսածս։ Ամենեւին միտք ունեցած չեմ հոս ի հիմանց հետազօտելու այն ամէն դժուարութիւնքն որ կրնան ծագիլ իմ այս համեմատութեամբս, զոր ընթերցողաց աչաց առջեւ դրի. բայց օր մը թերեւս զբաղիմ այսպիսի հետազօտութեամբ։ Իսկ այժմ բոլոր տենչանքս է խնդիրը պարզ ու մեկին առաջի դնել։ Երջանիկ եմ եթէ ուրիշ հայագիտաց մտադրութիւնն ուղղէի այնպիսի շաւղի մը վրայ, որմէ կ'երեւայ թէ արդիւնաշատ հետեւութիւնք պիտի ստացուին։

Փարիս, 11 Յուլիս 1892։

---

[1] [Ընթերցողը քիչ մ'ետքը պիտի տեսնէ որ այն ժամանակ տեղեկութիւնս թերի էր։ Ես կը գրէի Կէօրէսի գրքին արագ ընթերցմանէ մ'ետքն, որուն մէջ Ս. Բասիլիոսի Վկայաբանութիւնը միայն Սուրիոսի լատիներէնին համեմատ ի վկայութիւն կը բերուի։ Ասկէ հետեւցուցած էի որ յունարէն բնագիրը տպուած պիտի չըլլայ։ Հ. Յ. Տաշեանի հմտական մէկ նամակը յայտնեց սխալն եւ ծանոյց յունարէն բնագրին հրատարակուած ըլլալն ի Վարս Սրբոց (Acta Sanctorum.)]

## Բ.

Բանի մ՚ամիս յառաջ Մովսիսի Խորենացւոյ նուիրագրական աղբերաց իմ նուիրած առաջին հատուածս[1] կ'երեւայ թէ հայկական ուսմանց բարեկամաց հետաքրքրութիւնը շարժած է։ Այսու քաջալերական խրախոյս եւ համակրականաց ցոյցեր ընդունեցայ, որ ինծի համար մեծագին են։ Ի հարկէ եղան նաեւ ինչ ինչ ընդդիմաբանութիւնք, ի մէջ այլոց Պարոնեան Վարդապետի հմտալից եւ շատ բարեախորժ յօդուած մը "Հանդէս" տարւոյս 11 թուոյն մէջ։ Մեր յաջորդ տողերուն նպատակն է Պարոնեան Վրդ. ի պատասխան տալ։ Միայն թէ աստ ի սկզբան կը խնդրեմ իրմէ թոյլտուութիւն չհետեւելու այն ոճոյն որ սովորական է, այսինքն՝ իւր առարկութեանց դէմ մի առ մի պայքարելու՝ ջանալով ցուցընել թէ անոնք իմ ցուցմանցս դէմ չեն կրնար յաղթական ըլլալ։ Որովհետեւ բանակռուիս մէջ նոր իրողութիւններ յառաջ պիտի բերեմ, որոնք այն ժամանակ՝ երբ Մեծ. Պարոնեան իւր յօդուածը կը գրէր, ծանօթ չէին իրեն. այն ոճով գրելը շատ մ'անօգուտ խօսքերու առիթ պիտի ըլլար եւ ժամանակի մեծ կորուստ։ Ուստի կարծեմ նախամեծար է այն որ այս ակնարկած նոր իրողութիւնքս հոս յանդիման ընծայեցընեմ բոլորովին պարզ ու պայծառ՝ ըստ կարելւոյն։ Այսու՝ ինչպէս կը կարծեմ գտնէ՝ յինքեան

[1] Տես վերը՝ էջ 1—6:

աւելի կատարեալ եւ ընթերցողին. Համար աւելի վճռական պատասխան մը յերեւան կ'ելլէ՝ քան թէ այն, զոր վիճաբանութեան սովորական եղանակներով յառաջ կրնայի բերել։

Միայն մէկ կէտի մէջ Մեծ. Պարոնեանի գոհացում պիտի չտամ։ Առ ժամս մեր քննութիւնը Մովս. Խորենացւոյ Հայոց Պատմութեան Աղբիւրներուն խնդրոյն վրայ է, եւ այս ուսումնասիրութենէս գտած արդիւնքներէն իրաւունք, ունինք այլեւայլ հետեւութիւններ հանել։ Չենք կրնար սոյն հեղինակին կենաց նկատմամբ ժամանակագրական խնդիրները խառնել բանակռուիս մէջ, մանաւանդ որ մեր այս նկատմամբ ունեցած տեղեկութիւնք բոլորովին ճշգրիտ չեն, եւ մեծաւ մասամբ Թովմայի Արծրունւոյ (Ժ Դար) եւ Սամուէլի Անեցւոյ (ԺԲ Դար) պէս նոր հեղինակներէ քաղած են։ Այսպիսի բանակռիւ մ'անշուշտ մեծապէս շահաւէտ էր, բայց զմեզ մեր այժմու խնդրէն շատ հեռու պիտի տանէր։ Մեծ. Պարոնեան կը ներէ ինձի, եթէ առ այժմ այս խնդիրը մէկդի թողում։

Դառնանք ուրեմն Սեղբեստրոսի Վարուց, զոր Մովսիսի Խորենացւոյ Պատմութեան աղբիւրներէնս մին համարած էի։

Առաջին յօդուածիս հրատարակուելէն քանի մ'օր վերջը՝ Մեծ. Նորայրի մէկ նամակէն իմացայ որ Սեղբեստրոսի Վարուց հայերէն թարգմանութիւն մը կայ, եւ թէ այս թարգմանութիւնը Սոկրատայ Պատմութեան հայերէն թարգմանութեան ձեռագրաց սկիզբը կը գտնուի։ Հմուտ նամակագիրը կ'աւելցընէր որ այս թարգմանութիւնը յիշուած է Նոր Հայկազնեան Բառագրոց[1] Ցառաջաբանութեան մէջ դրուած հայ հեղինակաց ցանկին մէջ։ Անմիջապէս բանալով սոյն Բառագիրքը,

[1] Նոր Բառագիրք Հայկազնեան. Վենետ. 1836. Հտր. Ա. Ցռջք Վրք. Սեղբեստր.։

գտայ՝ ի մեծ զարմացումն ինձ՝ որ Հայերէն Սեղբեստրոսի Վարուց եւ Մովսէսի Խորենացւոյ մէջ եղած նմանութիւնք արդէն նշանակուած են, թէեւ հեղինակն այս պարագային ամենեւին կարեւորութիւն մը տուած չ'երեւար։

Իմ ուսումնասիրութիւնքս յայն յանգած ըլլալով թէ Հայոց աշխարհի Պատմութեան հեղինակը գլխաւորաբար հայ աղբիւրներ գործածած է, սկսայ արդէն սոյն վայրկենին կասկածիլ թէ կարելի է որ Մովսէս Խորենացի Սեղբեստրոսի Վարուց հայերէն թարգմանութիւնն առջեւն ունեցած ըլլայ։ Բնականաբար հետաքրքիր էի տեսնել նոյն բնագիրը, սակայն Սոկրատայ ձեռագիրք ամէն տեղ չեն գտնուիր. եւ այս իմ հետաքրքրութիւնս յագեցնելու համար ստիպուած էի սպասել մինչեւ որ Վեննայի Մեծարգոյ Հարց այցելութիւն մ'ընելու հաճոյքն ունեցայ՝ տարւոյս հոկտեմբեր ամսոյն կէսերը։

Ս. Ղազարու Մեծ. Հարք տրամադրութեանս ներքեւ դրին իրենց մատենադարանն այնպիսի յորգորափոյթ եւ առատամիտ կամօք, որ պարտական եմ հոս հրապարակաւ իմ լիուլի շնորհակալութիւնս յայտնել։ Հասնելէս քանի մը ժամ վերջը Սոկրատայ չորս ձեռագիրք առջեւս էին (Թ. 693, 738, 767 եւ 781), ամէնուն ալ սկիզբը "Պատմութիւն Սոկրատայ„ եւն[1] վերնագրոյն տակ՝ գրուած է Վարք Սեղբեստրոսի։ Շուտափոյթ համեմատութեամբ մը կրցայ իմանալ որ սխալած էի Սեղբեստրոսի Վարուց յոյն թարգմանութիւնը Մովսէսի Խորենացւոյ աղբիւրը նշանակելով, մինչդեռ առանց որեւէ տարակուսի Խորենացի գործածած է հայերէն թարգմանութիւնը։ Հոս կը դնենք երկու բնագիրները դէմ առ դէմ՝ մեր առաջին յօդուա-

---

1 Հմմտ. (Հ. Գարեգին Վ. Զարբ.) Մատենադարան հայկական թարգմանութեանց նախնեաց. Վենետ. 1889, էջ 694։

ծին մէջ զետեղեալ յունարէն բնագրին տեղ դնելով հայերէն թարգմանութիւնն, որ Սոկրատայ ձեռագրաց մէջ կը գտնուի. եւ կարծենք որ համեմատութեանս արդիւնք այնպիսի կ'ըլլայ՝ որ ամենէն դժուարահաճ համոզմունք իսկ յաղթահարէ, մանաւանդ երբ ընթերցողը հաճի կրկին անգամ հայեցուածք մ'արձակել յունարէն բնագրին վրայ։

| Մովս. Խոր. (Բ, գլ. ՁԳ։) | Վարք Սեղբեստր. (Հայ. Թրգմ.)[1] |
| --- | --- |
| Բայց յետոյ հրապուրեալ ի կնոջէն իւրմէ Մաքսիմինայ ի դստերէն Դիոկղետիանոսի, յարոյց հալածանս եկեղեցւոյ. | Բայց հրապուրեալ ի կնոջէ իւրմէ Մաքսիմնտեայ[2] ի դստերէն Դիոկղետիանոսի, եւ արար հալածանս եկեղեցւոյ Կոստանդիանոս. . |
| եւ զբազումս վկայեալ, | եւ բազումք եղեն վկայք. |
| ինքն եղեփանդական բորոտութեամբ ըստ բոլոր ընկալեալ մարմնոյն ապականեցաւ վասն յանդգնութեանն։ | Յայնժամ եղափանդական բորոտութիւն զբոլոր մարմին թագաւորին Կոստանդիանոսի ապականէր. . . . |
| Զոր ոչ կարացին բուժել արիողական կախարդքն եւ մարիսկեան բժիշկքն. յաղագս որոյ յղեաց առ | Վասն որոյ արոյկեան[3] կախարդք եւ արիոստիկեան[4] բժիշկք ոչ կարացին աւգնել աւն անդր. |

---

[1] Բնագիրն է ըստ Թ. 693, Ձեռագիր ԺԲ դարու։ Սոկրատայ ձեռագիրք ընդհանրապէս շատ թերի են, եւ յատուկ անուանց տառադարձութիւնք շատ խեղճ։ Ահաւասիկ Թ. 693 ձեռագրէն առնուած քանի մ'օրինակք. էջ 7 "ի փերոան ի լերինն", ἐν Ταρπείῳ ὄρει. էջ 3 "կարկիանոս, Ταρκυινος. էջ 5 "անտոնինոս,,, Εὐφροσινος եւն։

[2] "Մաքսիմնտէս,, աղաւաղութիւն է անուանս "Մաքսիմինա,, (Խոր. լատին. յոյնն ու սորին։)

[3] "Արոյկեան,, = ἀρίολοι. Թ. 767 եւ 781 "արիոսական.,, Խոր. "Արիողական,, աւելի եւս լաւ։ Նախնական բնագիրն անշուշտ "արիողական,, էր. Ձեռ. Փարիզի Bibl. Nat. Թ. 44 (ԺԲ դարու), Թղ. 455բ։

[4] "Արիոստիկեան,, = μαρσικοί. Թ. 767, 781 "արիստոկան.,, այս բառն անճանաչելի եղած է։ Մ. Խորենացւոյ բոլոր տպագրութիւնք "մարիսկեան,, կ'ըսեն. սակայն բուն ձեւը՝ "մարսիկեան,,՝ պահած են ի մէջ այլոց Ձեռ. 44 Փարիզի եւ Ձեռ. Լայփցիկի։

| | |
|---|---|
| Տրդատ, | |
| առաքել նմա գիւթս ի Պարսից եւ ի Հնդկաց. սակայն եւ այնք ոչ հասին նմա յօգուտ: | եւ ոչ Պարսից եւ Հայոց[1] . . . . . . . . . . . |
| Զօր եւ քուրմք ոմանք ի դիւաց խրատուէ հրամայեցին | Ըղձանային քուրմք ի դիւաց հրապուրանաց |
| բազմութիւն տղայոց զենուլ յաւազանս եւ ջերմ արեամբ լուանալ եւ | յոլովից տղայոց զենուլ յաւազանսն մեհենացն, եւ լուանալ ջերմ արեամբ զանձն, եւ այնպէս առողջանալ աէրին: . . . |
| | Եւ մայրքն զկնի մանկանցն եկեալ աշխարէին եւ լային զմահ մանկանցն. եւ լուեալ Թագաւորին . . . |
| ողջանալ. որոյ լուեալ զլալիւն մանկանցն հանդերձ մարցն կականմամբք . . . | |

Այնու աւելի աւելորդ է դնել հոս Մ. Խորենացւոյ նոյն գլխուն մինչեւ վերջին մասին բաղդատութիւնը, վասն զի վերջինս ութ տողի մէջ համառօտ ամփոփած է ձեռագրին ութ մեծ էջերու բովանդակութիւնը: Հոս ի մէջ բերուած կտորը լիուլի կը բաւէ արդարացընելու. սա առաջին եզրակացութիւնը՝ Թէ Մովսէս Խորենացի գործածած է Վարուց Սեղբեստրոսի հայերէն Թարգմանութիւնը:

Անցնինք քայլ մ'աւելի առնելու: Մեր առաջին յօդուածին մէջ շատացած ենք ընդհանուր խօսքերով միայն նշանակել Բ. գրոց ՁԳ գլխոյն նուազ պատմական եւ զրուցախառն նկարագիրը: Կոստանդիանոսի պատմութիւնը՝ այնպէս, ինչպէս հոնտեղ կը պատմուի, ամենեւին չի միաբանիր այն ամէնուն՝ զոր աւելի վաւերական եւ աւելի արժանահաւատ յիշատակարաններէն գիտենք: Ընթերցողն անձամբ պիտի դատէ այժմ:

1. Կոստանդիանոս ծնած է "դռնկէ," զոր այսօր պատմագիրներէն ոչ ոք կ'ընդունի:

[1] "Հայոց," անկնյայտնի աղաւաղութիւն է "Հնդկաց," անուան, զոր պահած է Մ. Խորենացի:

2. Կոստանդիանոս՝ որդին Կեսար՝ ամուսնութեան առաւ Դիոկղետիանոսի աղջիկն, իւր հօր՝ Կոստանդեայ Քլորեայ՝ Հռոմայ արքային՝ կենդանութեան ժամանակ։ Արդ Կոստանդիանոս այն ատեն կեսար հրատարակուեցաւ, երբ Կոստանդիոս Քլորոս մեռած էր, (յամի 306, Յուլ. 25) որ կ'իշխէր ի Գաղղիա եւ ոչ ի Հռոմ։ Երբեք ամուսնացած չէ Դիոկղետիանոսի աղջկան հետ, այլ Մաքսիմիանոսի դստեր՝ Փաւստայի՝ հետ 307ին, այսինքն իւր հօր մահուանէն գրեթէ տարի մ'ետքը։ Ամուսնութիւնը կատարուեցաւ յԱռլ Գաղղիոյ մէջ, եւ ոչ ի Նիկոմիդիա։

3. Երբ Կոստանդիանոս իւր հօր մահը լսեց, Նիկոմիդիա էր Դիոկղետիանոսի քով։ Սակայն գիտենք որ Դիոկղետիանոս հրաժարած (յամի 305, Մայիս 1) եւ առանձնացած էր ի Սալոն՝ Կոստանդիոս Քլորոսի մահուանէն տարի մը յառաջ։ Բաց աստի՝ ստոյգ է որ Կոստանդիանոս իւր հօր քովն էր, երբ վերջինս մեռաւ Եորք՝ Մեծն Բրիտանիա։

4. Կոստանդիանոս որդին կեսար էր՝ երբ տեսաւ հրաշալի խաչը, բայց դեռ չէր իշխող, այսինքն Կոստանդեայ Քլորոսի մահուանէն յառաջ։ Սակայն ընդհանրապէս կ'ընդունուի ընդհակառակն որ սքանչելիքը կատարուեցաւ այն ատեն, երբ Մաքսենտիոսի դէմ պատերազմելու կ'երթար, Միլուեան կամրջաց ճակատամարտէն (312 Հոկտ. 28) քիչ ժամանակ յառաջ, Կոստանդեայ մեռնելէն աւելի քան վեց տարի ետքը։

5. Կոստանդիանոս ինքնակալը քրիստոնեայներն հալածելուն պատժուեցաւ հիւանդութեամբ մը, որմէ բուժեց զինքը Ս. Սեղբեստրոս մկրտելով զանիկայ։ Արդ հաստատ է որ Կոստանդիանոս խաչին երեւմանէն ետեւ չդադրեցաւ քրիստոնէից օգնական ըլլալէն։ Միայն թէ չմկրտուեցաւ ինքն, եթէ ոչ իւր մահուան մօտ, (337 Մայիս 22) եւ այն՝ Եւսեբիոս Նիկոմեդիացիէն։

Ուրեմն Մովսէսի Խորենացւոյ այս պատմութեան մէկ տողն ալ կանգուն չի կենար. եւ արդարեւ խիստ կ՚ըլլար՝ անճշդութեանց այսչափ կոյտ մը վերագրել պատմագրի մը։ Ուստի արդէն մեր առաջին յօդուածին մէջ ըսած էինք որ Խորենացի դիմած պիտի ըլլայ թերակատար տեղեկատու աղբեր մը։ Այն ատեն մեր պարզ ենթադրութիւնն էր այս, թէեւ շատ հաստատուն հիմանց վրայ. վասն զի ունինք այսօր այս տեղեկատու աղբիւրն գտած. ահա արդէն առջեւնիս է՝ որ հայկական ձեռագրի մը վեց մեծ էջերը կը լեցընէ։ Մովսէս Խորենացի անկէ առած է այն բոլոր դէպքերը, կ՚ուզեմ ըսել՝ սխալները, որ կը լեցընեն Բ. ձգ. գլուխը. ընդունած է անոր նորանշան ժամանակագրութիւնը, մինչեւ անգամ անոր քանի մը յատուկ բացատրութիւնքը։ Քիչ է տեղերնիս հոս բովանդակ յիշատակարանը դնելու, բայց կը դնենք հաւատարիմ համառօտութիւն մը, որ զընթերցողն կարող պիտի ընէ դատաստան ընելու ծանօթութեամբ իրին։

Կոստանդիանոս կը ծնանի Կոստայ („Կոստ տրիբուն եւ զաւրավար„) առօրեայ տարփանքէն „պանդոկի„ մը մէջ գտնուած „աղջկան„ մը հետ։ Կոստ՝ որ Սարմատացւոց պատերազմէն կը դառնար, կը շարունակէ ճամբան, կը հասնի Հռոմ, հոն կ՚ըլլայ թագաւոր եւ ամուսնութեան կ՚առնու Մաքսիմիանոս թագաւորի դուստրը. (— „Եւ ինքն գնաց զճանապարհ իւր. եւ հասեալ ի Հռոմ թագաւորեաց բազում եւ երեւելի փառաւք. եւ առ իւր կին զդուստր Մաքսիմիանոսի թագաւորի.„ —) որմէ կ՚ունենայ որդի մը զուրկ ուշիմութենէ եւ անկարող յաջորդելու իւր տեղ։ Այն ատեն բոլոր տէրութեան մէջ փնտռել կու տայ տղայ մը, զոր որդեգրել կարենայ. եւ իւր գաղտնի պատուիրակք կ՚օթեւանին այն պանդոկին մէջ՝ ուր դեռ կը բնակէր Հեղինէ իւր Կոստանդիանոս որդւոյն հետ. որուն արքունի սերունդ ըլլալը կրնայ ցուցընել։ Անմիջապէս Հռոմ կը բերուի տղան, զոր Կոստ ուրախութեամբ կ՚ընդունի եւ սնուցանել կու տայ, եւ քիչ մ՚ետքը Կեսար կը հրատարակէ։

Հռոմայեցւոյ եւ Բիւզանդացւոց մէջ պատերազմ ծագելով՝ Կոստ վերջինոց դէմ կը խաւրէ իւր Կոստանդիանոս որդին։ Կոստանդիանոս կը յաղթուի եւ մեծ վարանաց մէջ ինկած թէ ինչ որոշէ ընել, տրտմած կը ննջէ ("տրտմեալ ննջէր։") Երազին մէջ կը տեսնէ խաչ մ'աստղներէ յօրինուած, եւ կը յորդորուի որ այս նշանը տանել տայ իւր զօրաց առջեւէն՝ հանդերձ խոստմամբ թէ միշտ յաղթող պիտի ըլլայ։ ("Եւ տեսանէ ի տեսլեան գիշերին. վերնագիր աստեղաց նշան խաչի. եւ բան զի ասէր յունմինէ. զայս նշան արարեալ առաջի յաղթեսցես պատերազմիդ եւ ամենայն մարտից։")[1] Հնազանդեցաւ եւ ջնջեց իւր բոլոր հակառակորդները՝ նշանաւ խաչին։

Դիոկղետիանոս՝ Կոստանդիանու Կեսարի շահատակութեանց համբաւէն դրդուած՝ անոր կնութեան կու տայ իւր Մաքսիմնէս դուստրը. (— "... փեսայացուցանել զնա ի դուստր իւր Մաքսիմնէս." —) եւ պատիւներ կը զեղու անոր վրայ, որ այսպէս իւր որդեգիրն եղած էր. (— "եւ բազում փառաւք մեծարեաց զորդեգրացեալն իւր։" —).

Հարսանեաց օրերէն քիչ մ'ետքը Կոստայ մահուան գոյժը կը հասնի։ Կոստանդիանոս կնաւ ու գնդաւ Հռոմ կ'երթայ եւ հոն կը թագաւորէ իւր հօր տեղ (— "եւ թագաւորեաց փոխանակ հաւր իւրոյ ի Հռոմ։" —) Մեծ յաջողութիւններ կ'ունենայ ի սկզբան "նշանաւ խաչին՝ որ երեւեցաւ նմայ։"

Այս զրոյցն ամենէն աւելի հետաքրքրական պիտի ըլլայ ուսումնասիրելու եւ համեմատելու ուրիշներուն հետ, երբ ամբողջ բնագիրը լոյս տեսած ըլլայ[2]։ Առ այժմ խնդրէն դուրս ելած կ'ըլլայինք

[1] Ինծի կ'երեւայ թէ այս կտորին բնագիրն այլեւայլ սրբագրութեան կարօտ է։

[2] Կոստանդիանոսի ծնունդը գրեթէ նոյն եղանակաւ կը գտնուի պատմուած Փարիզի ձեռագրին մէջ՝ Bibl. nat. Թ. 46, հատոր Բ, թղ. 25ա։ Զրոյցին ամբողջութիւնն քանի մը նմանութեան կէտեր ունի այն գրութեան հետ զոր հրատարակեց Հայտէնրայխ այս տիտղոսի տակ՝ "Գիրք անծանօթ մատենագրի վասն Կոստանդիանոսի Մեծի եւ

եթէ այս նկատմամբ որեւէ կարծիք յայտնէինք։ Այս միայն կ'ուզենք հաստատել հոս՝ թէ Մ. Խորենացի սոյն գրուածնէն քաղուածք մ'ըրած է։

Մատադիր ընթերցողն արդէն գուշակած պիտի ըլլայ յիշատակարանիս ծագումը։ "Մաքսինտէս„[1] բառը կը յիշեցնէ Սոկրատայ ձեռագիրները. եւ արդեամբք՝ Վարուց Սեղբեստրոսի հայ թարգմանութեան մէջ գտանք զայն՝ դրուած վիշապի պատմութեան եւ Կոստանդիանոսի հիւանդութեան մէջտեղ իբրեւ յառաջաբան ներածութիւն վերջնոյս։ Ասոր կը յաջորդէ առանց ընդհատութեան այն հատակոտորը զոր վերը դրինք երկու բնագիրներու մէջ, այսպէս. "բայց հրապուրեալ ի կնոջէ . . . ,„ Շատ նորանշան, բայց նաեւ շատ կարեւոր այն կէտն է որ Կոստանդիանոսի այս զրոյցը Վարուց Սեղբեստրոսի միայն հայ թարգմանութեան մէջ կը գտնուի. լատին, յոյն եւ ասորի բնագիրք հետքն իսկ չունին ատոր։ Ուրեմն այս կտորն մուծուած է հայերէն բնագրին մէջ կամ նոյն իսկ թարգմանիչէն եւ կամ յետոյ ուրիշ անձէ մը, բայց յամենայն դէպս մուծեալ յաւելուած մըն է. եւ այժմ իրաւունք ունինք մեր առաջին հետեւութիւնը լրացնել երկրորդ եզրակացութեամբ մը, զոր այսպէս կը կազմենք. "Մովսէս Խորենացի գործածած է Վարուց Սեղբեստրոսի հայերէն թարգմանութիւնն, երբ վերջինս արդէն ընդմիջարկեալ յաւելուածներ ունէր։„

Անշուշտ իմ ընդդիմաբանքս կը հաւանին թէ այս եզրակացութիւնքս չեն տկարացըներ այն հետեւութիւնքն, զոր հանած էի առաջին քննու-

---

մոր նորա Հեղինեայ։„ Լայփցիկ, Թէօյպներ. 1879. — (E. Heudenreich, Incerti auctoris de Constantino magno eiusque matre Helena libellus. Lipsiae, Teubner, 1879.)

[1] կամ լատ. եւս՝ մարդու անունը՝ "Մոտօսինոփէոս.„ Հմմտ. Վարդան, Պատմ. տպ. Վենետ. 1862, էջ 41։

թեանցս մէջ՝ Հայոց Պատմութեան գրութեան ժամանակին նկատմամբ։ Վարուց Սեղբեստրոսի Հայերէն թարգմանութիւնը յոյն բնագրին վրայէն ըլլալով՝ պէտք է վերջինս գոնէ քանի մը տարի ետքը դնել, որ հետեւաբար Մովսիսի Խորենացւոյ գիրքն աւելի եւս յետնագոյն ժամանակի կը մղէ։ Չենք ուզեր առ այժմ մեր հանած հետեւանքները աւելի եւս հեռուն տանիլ։

Հաւանական է որ այս գրութեանց ուսումնասիրութեամբք Մովսիսի Խորենացւոյ գործքին նկատմամբ աւելի ճշգրիտ տեղեկութիւններ կարենանք յետոյ հանել։ Բայց նախ քան զայս՝ քննադատական կարեւոր աշխատութիւն մը սկսելու եւ լաւ վերջացընելու է։ Այսօրուան օրս խնդրոյն վիճակն հետեւեալն է։

1. Վարուց Սեղբեստրոսի եւ Սոկրատայ Եկեղեցական Պատմութեան Հայերէն թարգմանութիւնք իրարու կցուած կ'երեւան, եթէ ոչ նոյն իսկ թարգմանչէն՝ գոնէ շատ կանուխ ժամանակներ։ Վենետկոյ չորս ձեռագիրք, զորոնք միայն տեսած եմ, այս երկու գործքն ալ մէկտեղ ունին։ Կիրակոս Գանձակեցի[1] կ'ըսէ որ Սոկրատայ Պատմութիւնը կը սկսի խօսելով Ս. Սեղբեստրոսի Հռոմայ քահանայապետի եւ Կոստանդիանոսի վրայ, եւ շարունակելով պատմութիւնը մինչեւ Թէոդոս Բի օրերը։

2. Սոկրատայ Հայերէն թարգմանութեան ժամանակը կը ծանուցանէ Աստղիկ՝ Փիլոնի Տիրակացւոյ՝ Անաստասայ կաթողիկոսի (661—667) ժամանակակցին[2] վերագրելով։ Քիչ մ'աւելի անագան ժամանակաւ կը դնէ թարգմանիչն իսկ գրքին վերջը դրած իւր յիշատակարանաւ, ծանու-

[1] Վենետ. 1865, էջ, 2։
[2] Տպագր. Ս. Պետր. 1885, էջ 99։

ցանելով որ իւր թարգմանութեան ձեռնարկած է խնդրանօք Ներսէս Հիկամսարականի, պատրկին Հայոց աշխարհի[1] (690—692։) Չամչեան[2] կը յաւելու թէ Փիլոն Տիրակացի իւր թարգմանութեան մէջ մուծած է շատ մը յաւելմունք եւ ընդմիջարկութիւնք եւ իբրեւ Սոկրատայ գործք մէջտեղ հանած։

Գիտնական խիստ քննութիւն մ'անշուշտ մեր ունեցած այս ծանօթութիւնքս պիտի եղանակաւորէ։ Արդէն Մեծ. Հ. Գարեգին կը ծանուցանէ Սոկրատայ ձեռագրի մը գոյութիւնը յԵրուսաղէմ, որ հաւանականագոյնս աւելի հին թարգմանութիւն մ'առջեւնիս կը դնէ. գոնէ յամենայն դէպս աւելի ճիշդ թարգմանութիւն մը՝ քան Վենետկոյ ձեռագրացը[3]։ Արդեօք վերջինքս սրբագրեալ կամ թերեւս այլայլեալ բնագիր մը կը կու տան մեզի, որ Փիլոնի Տիրակեցւոյ գործքն ըլլայ։ Այս կէտերը քննադատական հետազօտութիւն մը դիւրաւ կրնայ լուսաւորել։

Բայց ամէնէն յառաջ պէտք են այս բնագիրք հրատարակուիլ։ Եւ կարծենք հայկական ուսմանց բոլոր հետամուտ մշակողաց թարգմանն եղած կ'ըլլանք՝ խնդրելով Երուսաղեմայ Գեր. Պատրիարքարանէն եւ Վենետկոյ Մեծ. Մխիթարեանց Հարցմէ որ շատ չյապաղեն տալ մեզ հրատարակութեամբ այս յիշատակարանքն, որոնց մեծ արժէքը կարծենք պայծառագոյնս յերեւան հանեցինք։

*Փարիս, 20 Նոյեմբեր 1892։*

---

[1] (Հ. Գարեգին. Վ. Զարբ.) Մատենադարան Հայ. թարգմ. Նախ. էջ 696։

[2] Հտր. Բ. էջ 375։

[3] Մատեն. էջ 697։

## Գ.

Մովսէս Խորենացի Բ գրոց ՁԸ գլխուն մէջ կը շարունակէ Կոստանդիանոս կայսեր նկատմամբ այն տեղեկութիւնը, զոր ՁԳ գլխուն մէջ սկսած էր տալ: Թէեւ չորս գլուխք կը բաժնեն զանոնք, սակայն կարծես թէ ցուցընելու համար որ այն երկու կտորներն անձուկ կերպով կապուած են հեղինակին գաղափարին մէջ, երկրորդը կը սկսի նոյննախադասութեամբն՝ որով փակուած էր առաջինը. („ի բառնալն Աստուծոյ զբռնաւորսն ամենայն յերեսաց Կոստանդիանոսի:")

ՁԸ գլուխն՝ ամբողջովին առեալ՝ այնչափ հակառակ չէ պատմական ճշմարտութեան որչափ ՁԳ գլուխը: Սակայն ինչպէս պիտի տեսնենք, շատ թանձր եւ այնպիսի սխալներ ունի, որոնք ենթադրել կու տան թէ պատմագիրն գործածած է այնպիսի աղբիւրներ, որ քիչ արժանահաւատ էին:

Այս անճիշդ տեղեկութիւններէն երեք հատն արդէն ծանուցած էինք մեր առաջին յօդուածին մէջ[1]: Հոս կը նշանակենք զանոնք կրկին անգամ:

Ա. Լիկինիանոս նկատուած է իբրեւ ստորակարգեալ, իբրեւ հպատակ Կոստանդիանոսի, մինչդեռ յիրականութեան բոլորովին անկախ էր վերջինէս:

Բ. Ս. Բասիլէոս Ամասիացի մարտիրոսութիւն

[1] Տես վերը՝ էջ 4 եւն:

կրած է այն դիպաց առթիւ՝ որ կը պատմուին Սրբուհւոյն Գղափիւռեայ զրոյցին մէջ, որ չի կրնար պատմական ըլլալ։

Գ. Լիկինիանոս՝ իր պարտութենէն ետքը՝ Գաղղիա կ'աքսորուի։ Ընդհակառակն ստոյգ աղբիւրէ գիտենք որ Լիկինիանոս Թեսաղոնիկէ վտարուեցաւ, ուր քիչ ժամանակ վերջը սպաննուեցաւ։

Այն ժամանակ կը գրէինք առանց պարապ ունենալու բուն իսկ բնագիրները գործածելու, այլ միայն ծայրաքաղ կը համառօտէինք Տր. Փր. Կէօրէսի Լիկինիանոսի հալածման վրայ գրած հետաքրքրական երկասիրութեան քանի մ'էջերը։[1] Միայն թէ փոխանակ գերմանացի գիտնականին հետ համարելու թէ Մովսէս Խորենացի ըլլայ աղբիւրն "Վկայաբանութեան Ս. Բասիլեոսի[2] (Acta S. Basilei), որուն մէջ կը գտնենք վերստին այն սխալներն՝ զոր թուեցինք, շրջած էինք խնդրին եզրները եւ յայտարարած թէ ընդհակառակն հայ պատմիչն այս յիշեալ յիշատակարաններէն փոխառութիւններ ըրած է։ Այսօրս "Հայոց Պատմութեան„ Բ գրոց ՁԸ գլուխն եւ Վարքը մանրակրկիտ ուսումնասիրելով՝ մեր առաջին կարծեաց մէջ յարատեւել միայն կրնանք, սակայն քանի մը թեթեւ փոփոխութիւններ ընելով, եւ կը յուսանք թէ կարող պիտի ըլլանք մեր համոզումը նաեւ ընթերցողին մտաց մէջ ալ ծնուցանել։ Պիտի ջանանք փորձել զայս քննելով հետզհետէ Մովսիսի Խորենացւոյ անճիշդ նախադասութեանց ամէն մէկը։

Ա. "Ի բառնալն Աստուծոյ զբռնաւորսն ամենայն (այսինքն՝ իր մրցակիցները) յերեւաց Կոս-

---

[1] "Քննադատական հետազօտութիւնք Լիկինիանոսի հալածանաց վրայ.„ (Dr. Fr. Görres, Kritische Untersuchungen über die Licinianische Christenverfolgung, Jena 1875, p. 115ff.)

[2] Acta Sanctorum Aprilis, Tom. III, p. 422 ff. եւ p. LXII ff.

տանդիանոսի՝ մեծարեաց նա զԼիկինիանոս մեծութիւն յոյժ, եւ եռ նմա կնութեան զքոյր իւր ոչ համամայր, ծիրանեօք եւ պսակաւ կայսերական զարդարեաց զնա, եւ յերկրորդականս հաստուցեալ պատիւս, որքայ ամենայն արեւելից կացոյց:" Այսպէս է Մովսիսի Խորենացւոյ պատմածը Լիկինիանոսի դրից նկատմամբ առ Կոստանդիանոս: Դիւրին չէ ընծայել պատկեր մ'որ պատմական իրականութեան աւելի անհամաձայն գտնուի քան զայս: Ընթերցողն թող ինքնին դատէ դիպաց յաջորդ շատ հակիրճ համառօտութենէն:

Լիկինիանոս "աւգոստոս" հրատարակուեցաւ Գաղերիոսէն 307ին՝ երկրորդ տարիճանն ունենալով ինքնակալութեան մէջ (Գաղերիոսէն ետքը): Կոստանդիանոս՝ որ իւր հօր մահուանէն (306) ի վեր կեսար էր, Գաղերիոսէն ընդունեցաւ "աւգոստոս" տիտղոսը Լիկինիանոսէն տարի մ'ետքն 308ին: Գաղերիոս մեռաւ 311ին: Յաջորդ տարին Կոստանդիանոս յաղթելով Մաքսենտիոսին՝ իւր ունեցած երկիրներուն հետ կցեց նաեւ Իտալիան եւ Ափրիկէն: Լիկինիանոս 313ին հանդիպեցաւ Միլանի մէջ Կոստանդիանոսի, որուն Կոստանդիա քոյրը կնութեան առաւ: Ճիշդ այս տարին յանկարծակի յարձակում կրելով Մաքսիմինոսէն՝ որ Արեւելից աւգոստոս էր, Լիկինիանոս յաղթեց անոր եւ իւր պետութեան (որ էր Լէ-չէկէ) կցեց նաեւ Արեւելքն որ Մաքսիմինոսի մասն էր: Այնուհետեւ միայն երկու ինքնակալք կային՝ իրարմէ բոլորովին անկախ, բայց անոնց մէջ պատերազմ մը ծագիլը շատ հեռու չէր. սակայն Կոստանդիանոսի եւ Լիկինիանոսի մէջ վերջնական կռիւն ու վերջնոյն պարտութիւնը հազիւ 323ին կատարուեցաւ[1]:

Ուրեմն Լիկինիանոս Կոստանդիանոսի ստորակարգեալը չէր երբեք: Բայց Վորդ Ս. Բոխլեօէ հա-

[1] Հմմտ. Duruy, Histoire des Romains, VIII, էջ 13 ff.

կատակ տեսակէտ մը մատնանիշ կ'ընէ։ Արդեամբք ալ կը կարդանք հոն թէ Կոստանդիանոս "տուաքեաց զԼիկինիանոս մարտնչել ընդդէմ Մաքսիմինոսի։" Սակայն այս պարզ նախադասութիւնը չի բաւեր որ զինքն իբրեւ Մովսէսի Խորենացւոյ աղբիւրը նկատենք։ Աւելի կը կարծենք թէ Խորենացի Եւսեբիոսի "Եկեղեցական Պատմութիւնն" աչքի առջեւ ունէր, որմէ շատ անգամ փոխառութիւններ կ'ընէ Բ գրոց բովանդակ ընթացքին մէջ՝ գործածելով հայերէն թարգմանութիւնը։ "Արժանի համարեալ էր Լիկինիանոս ընդունել զերկրորդ աստիճան յետ մեծի ինքնակալին Կոստանդեայ, առնուլ ի կնութիւն զքոյր նորա եւ այսպէս ի հօրակալ ընտանիս նորա ընկալեալ լինել։[1]" Մեր ենթադրութիւնը կը հաստատուի անով որ թէ՛ Մ. Խորենացի եւ թէ՛ Եւսեբիոս երկու առնուազն նոյնանշան բացատրութեանց գործածութեան մէջ կը միաբանին. երկուքն ալ Կոստանդիանոսը կը նկատեն իբր Լիկինիանոսի բարերարը ("Բարեգործ", πανευεργέτης,) եւ երկուքն ալ՝ երբ վերջնոյս շուայտութեանց վրայ կը խօսին, արդէն ծեր եղած կը համարին, ("ալեւոր," ἐσχατόγηρως,) մինչդեռ՝ ըստ հաշուի Վաղեսիոսի՝ հազիւ 55 տարեկան եղած կրնայ ըլլալ։

Բ. Լիկինիանոս "զկին իւր ի մեծ նեղութիւն արգել, սակս տրփութեան երանելւոյն Գլափիւրայ, վասն որոյ սպան զսուրբն Բասիլիոս[2] Պոնտացւոց եպիսկոպոս։" Այսպիսի բացատրութեան

---

[1] Գիրք Ժ. գլ. Ը. . . . βασιλέως μεγάλου Κωνσταντίνου δευτερείων τιμῆς, ἐπιγαμβρίας τε καὶ συγγενείας τῆς ἀνωτάτω ἠξιωμένος. Շատ ցաւալի է որ այս կտորին հայերէն թարգմանութիւնը կը պակսի։ Ծանօթ է որ Եկեղեցական Պատմութեան Վենետկոյ տպագրութեան մէջ վերջին էջերը պակասաւոր են։

[2] "Բասիլիոս" եւ ոչ "Բարսեղ", (— Ճշդագոյն Բասիլէոս։)

կերպը իբրեւ ծանօթ կ'ենթադրէ սրբուհւոյն Գլափիւռայ զրոյցը, որ Կոստանդիայի՝ Լիկինիանոսի կնոջ նաժիշտն էր, եւ ինքնակալին հետապնդութիւններէն ազատելու համար որոշեց Հայոց աշխարհն երթալ թաքչիլ, բայց կանգ առաւ յԱմասիա՝ ուր Բասիլէոս եպիսկոպոսին պաշտպանութեան ներքեւ կ'ապրէր։ Լիկինիանոս իմանալով անոր թաքստեան տեղը՝ հրամայեց որ իրեն Նիկոմեդիա բերեն օրիորդն ու եպիսկոպոսը։ Սակայն նոյն օրիորդն այս միջոցները մեռած ըլլալով՝ միայն Բասիլէոս տարուեցաւ ինքնակալին, որ ի մահ դատապարտեց զայն եւ մարմինը ծով նետել տուաւ։ Արդ սրբուհւոյն Գլափիւռայ այս զրոյցը միայն Ս. Բասիլէոսի Վարուց մէջ կը գտնուի, որուն արժէքն այժմ իսկ պիտի գնահատենք։ Մովսէս Խորենացի ուրեմն այս Վարուց գոնէ մէկ հատակոտորը առած է եւ գործածած։

Գ. Սակայն երկու բնագրաց նմանութիւնն այն տեղ ամենէն աւելի աչքի կը զարնէ, ուր կը պատմուի Լիկինիանոսի կրած պատիժը Կոստանդիանոսէն յաղթուելէն ետքը։ Մովսէս Խորենացի կ'ըսէ. «Իսկ իբրեւ եկն յաղթողն Կոստանդիանոս, մատնեաց Աստուած ի ձեռս նորա զԼիկիանոս. յոր խնայեալ որպէս ի ծերունի եւ ի քեռայր, ետ տանել ի Գաղղիաւս հանդերձ երկաթի կապանօք՝ դնել ի մետաղս, զի աղօթեսցէ առ Աստուած՝ որում մեղաւ, թերեւս երկայնամիտ լիցի առ նա։» Միւս կողմանէ կը կարդանք Ս. Բասիլէոսի Վարուց մէջ[1]. «Եւ

---

[1] *Καὶ σχεδὸν μέχρι θανάτου παιδεύσας αὐτὸν, ἄνευ βασιλικῆς καὶ τῆς οἱασοῦν, ἀρχικῆς ἐξουσίας, εἰς Γαλλίους αὐτὸν ἀποστέλλει, κατοικεῖν. Διὰ γὰρ τὸ εἶναι αὐτὸν γαμβρὸν, οὐκ ἐθανάτωσεν αὐτὸν, τῶν μυρίων θανάτων ὑπαίτιον, εἰπὼν αὐτῷ ἐπὶ πάσης τῆς Συγκλήτου· Κλαῦσον καὶ μετανόησον ἐφ' οἷς ἐτόλμησας, καὶ ἀγαθὰ ἐργαζόμενος, μὴ ἐνδόσῃς ποτέ· ἴσως ὁ Θεὸς ἵλεώς σοι καὶ εὐμενὴς.... γένηται.* Acta S. Basilei, § 21.

պատուհասեալ զնա գրէ թէ մինչեւ ցմեռանել՝ առաքէ Կոստանդիանոս զԼիկինիանոս բնակել ի Գաղղիա, զրկեալ յամենայն իշխանութենէ արքունի։ Ոչ սպան զնա՝ որ արժանի էր բիւր մահուանս մեռանելոյ, քանզի քեռայր իւր էր, բայց ասէ ցնա առաջի ամենայն ծերակոյտ ժողովոյն. Կոծեաց եւ ապաշաւեա զչարիսդ, եւ արա զբարիս եւ մի՛ երբեք թողացուցես, թերեւս ողորմեսցի քեզ Աստուած եւ երկայնամիտ լիցի։»

Երկու պատմուածքներուս նմանութիւնը՝ կ'ուզէինք ըսել նոյնութիւնը՝ ակնյանդիման կ'երեւայ մեզի։ Սակայն եթէ չհաւանին ոմանք ընդունիլ զայս, կը դնենք այժմ իրենց առջեւ փոքրիկ դէպք մը՝ որ թէեւ դուզնաքեայ երեւայ, սակայն այնպիսի է որ կը համոզընէ։

Չենք ուզեր դարձեալ խօսիլ պատմական թանձր սխալին վրայ՝ զոր երկու բնագիրք ալ գործած են, եւ այն՝ իրենք միայն, այսինքն է Լիկինիանոսի ի Գաղղիա աքսորուիլն։ Միայն տեսնենք թէ ինչ բառերով բացատրուած է այս սխալը։ Մ. Խորենացի կ'ըսէ «Եւ տանել ի Գաղղիոս։» Ոչ ոք պիտի համարձակի ըսել թէ «Գաղղիոս» հայերէն բառ մ'ըլլայ։ Արդ Վարուց տոր համեմատական յունարէն բնագրին մէջ կը կարդանք εἰς Γαλλίους[1] αὐτὸν ἀποστέλλει κατοικεῖν. եւ Γαλλίους բառը նոյնչափ յունարէն չէ՝ որչափ «Գաղղիոս» չէ հայերէն։ Այս ալ այն շատ առանձնայատուկ խժաբանութիւններէն (barbarisme) է, որոնց բաւական յաճախ կը հանդիպինք օրբախօսական մատենագրութեան մէջ։ Երկու յիշատակարանացս մէջ ալ

---

[1] Acta Sanctorum հրատարակութեան բնագրին մէջ εἰς Γαλλίας կ'ընթեռնունք. բայց հրատարակչին սրբագրութիւնն է այն, որ ծանօթութեան մը մէջ կը ծանուցանէ թէ ձեռագիրը Γαλλίους ունի։ Փարիզի մի միայն ձեռագիրն՝ որ Ս. Բոսիլեոսի Վարքն ունի (ԺԲ դարէն) նմանապէս Γαλλίους կը կարդայ. (Ձեռ. Ցուցակ. 1534, թղ. 138 բ։)

այսպիսի բառի մը գտնուիլը միայն իսկ բացարձակօրէն կ'ապացուցանէ որ մին միւսէն յառաջ եկած է, եւ այս դէպքիս մէջ յունարէնը չէ, որ Մովսէսի Խորենացւոյ Հայերէնէն յառաջ եկած կրնայ ըլլալ:[1]

Նախընթացէն կը հետեւի որ «Հայոց Պատմութեան» հեղինակը գործածած է այն գլխուն մէջ՝ որուն վրայ է խօսքերնիս, եւ անգամ մը գրեթէ բառացի կերպով ի մէջ բերած՝ Ամասիոյ եպիսկոպոսին՝ Բասիլիոսի վկայքին Վարքոյ ինչ ինչ մասերը:[2] Այս յիշատակարանն իրեն հեղինակ կ'անուանէ Յովհաննէս անուն Նիկոմեդացի քահանայ մը, որ Ս. Բասիլիոսի յայց եղած է բանտին մէջ, եւ կը պնդէ թէ կը պատմէ «զոր ինչ տեսս եւ լուաւ եւ ի վերայ եհաս:»[3] Ուստի ժամանակակից եւ մեծ ճոխութիւն ունեցող աղբիւր մը կ'ունենանք առ-

---

[1] Acta Sanctorum գրքին հրատարակիչք Ս. Բասիլիոսի վկայաբանութենէն առջը կը տպագրեն Ներբողեան մը (Ἐγκώμιον) նոյն սրբոյն, որ ուրիշ բան չէ, բայց եթէ առաջին յիշատակարանին հռետորական ճոխացում: Այս ներբողեանին մէջ Լիկինիանոսի նկատմամբ գործածուած կը գտնենք Ս. Գրքէն կոչում մը՝ Երեմ. ԺԳ, 23. («Եթէ փոխիցէ Հնդիկ զմորթս իւր, եւ ինձ զխայտուցս իւր» եւն:) Մովսէս Խորենացի նոյն իսկ ԶԸ գլխուն մէջ կոչումն կ'ընէ այս տողը, զոր չի բերեր ի մէջ ըստ Հայերէն թարգմանութեան Աստուածաշնչի: Այս անշուշտ լոկ պարզապէս զուգադիպութիւն չէ: Թերեւս կոչումն նախնաբար կը գտնուէր Վարքին մէջ՝ զոր Մ. Խորենացի գործածած է, եւ յետոյ աներեւոյթ եղած է բնագրին մէկ մասին խանգարուած ըլլալուն: Յամենայն դէպս Ներբողեանին մէջ այս տեղը անհասկնալի եղած է՝ այսպէս. Ἀλλ' ἔλαθεν, Αἰθίοπα σμήχων, καὶ παρδάλει κελεύων ἀποθέσθαι τὸ κατάστικτον, § 6. Փարիզի ձեռագիրք՝ Թիւ 1500 եւ 1604 միեւնոյն բնագիրը մեր առջեւ կը դնեն:

[2] Ս. Բասիլիոս ըստ Ժամանակագրութեան Ս. Յերոնիմոսի՝ Կոստանդիանոսի 13դ. տարին վկայած է: Համմ. Եւսեբիոսի Քրոնիկոն, տպ. Մայի եւ Զօհրապ, էջ 396:

[3] Ὅσαπερ ἑώρακα, ἤκουσα καὶ ἐδιδάχθην. Acta S. Basilei § 23. Թերեւս օգտակար է միտ դնել տալ որ Փարիզի ձեռագիրը Պոլլանտեանց հրատարակած բնագրին § 22 տեղը կը դադրի, ուստի եւ հեղինակին վրայ բան մը չ'ըսեր, եւ ոչ ալ այն աստուածաբանական վիճաբանութեան վրայ՝ զոր Ս. Բասիլիոսի հետ ունեցած կ'ըսուի:

ջեւնիս։ Սակայն շատ ժամանակէ ի վեր սրբախօսական խնդրոց մէջ ամէնէն աւելի հմուտ գիտնականք՝ ինչպէս Հենրիկոս de Valois (Վալեսիոս), Փաճի (Pagi), Ռուինար (Ruinart), Թիյեըմօն (Tillemont) եւն ցուցուցած են որ այս գրութիւնը չի կրնար վաւերական ըլլալ, եւ իւր պատմական արժէքն՝ այսպէս ըսելու համար՝ հաւասար է ոչնչի։ Կէօրէս՝ որ Ս. Բոնիֆատիոսի Վարքն վերջին անգամ քննեց, աւելի եւս յառաջ կ՚երթայ եւ զայն կը վերագրէ Մետափրաստէսի խմբագրութեան, այսինքն է՝ մինչեւ Ժ դար կ՚իջեցընէ։ Յամենայն դէպս այսպիսի դատաստան մը շատ չափազանց է։[1] Եթէ այն ենթադրութիւնը՝ զոր այժմ պիտի պարզենք, հաստատուի, Ս. Բոնիֆատիոսի Վարուց ժամանակը մերձաւորապէս որոշ հաստատելու համար կռուան մը կ՚ունենանք։

Ներողութիւն կը խնդրենք ընթերցողէն որ վայրկեան մը թողունք մեր ճշդապահանջ ոճն՝ որուն հետեւեցանք ցայս վայր, եւ ենթադրութեանց ասպարէզը մտնենք։ Կրնանք միայն զայն ի մէջ բերել ի ջատագովութիւն մեր՝ որ աչքի առջեւ չունինք Սոկրատայ հայերէնը, եւ վերջնոյս Ա գրոց առաջին գլուխները կը պակսին Ս. Ղազարու Թ. 693 ձեռագրին մէջ՝ որուն նկատմամբ մեծայարգ տեղեկութիւններ ստացանք գիտնականն Հ. Բարսեղ Վ. Սարգիսեանի ազնուութեամբն։ Կը փորձենք այժմ այս պարապը լեցընել ենթադրութիւններով, որոնց սակայն աւելի ծանրակշռութիւն մը՝ քան զոր արդեամբք ունին, տալ չենք ուզեր. ասոնց վրայ վերջնական վճիռը պիտի տայ այն՝ որ առաջին անգամ ամբողջական ձեռագիր մ՚ունենայ իւր տրամադրութեան ներքեւ։ Բաց աստի այս հե-

[1] Goerres, p. 120։ Այս գործին կը խաւրենք ընթերցողը քննադատական խնդրոցս բոլոր մանրամասնութեանց նկատմամբ։

տաղօտութիւնս առիթ կու տայ մեզի քանի մը փոքր մանրամասնութիւններ ի մէջ բերելու՝ որոնք անհետաքրքրական չեն։

Բաւական դժուարին կ'երեւայ մեզ ընդունիլ թէ Մովսէս Խորենացի Ս. Բոռոֆլլոսի Վարքն իբրեւ անկախ աղբիւր գործածած ըլլայ՝ յունարէն եւ կամ հայերէն բնագրէն։ Եթէ ամբողջ այն յիշատակարանն իր առջեւն ունենար, անշուշտ զանց չէր առներ պատմելու մեզի Լիկինիանոսի զարհուրելի հիւանդութիւնն ու մահը։[1] Աւելի կ'ախորժինք կարծել թէ արդէն ուրիշ որեւէ գործքի մը մէջ ընդօրինակուած գտած է այն տեղեկութիւններն, որոնց աղբիւրն ըսինքն թէ Վարքն ըլլայ. եւ ըստ մեզ՝ այն գործն էր Սոկրատայ Եկեղեցական Պատմութեան հայերէն թարգմանութիւնը, որուն նկատմամբ արդէն նշանակեցինք թէ շատ բազմաթիւ յետսամուտ ընդմիջարկութիւններ կրած է։[2]

Ահաւասիկ այն պատճառներն որ մեզի կ'երեւայ թէ ի կողմն կ'ելլեն այն ենթադրութեան՝ զոր այժմ յայտնեցինք։

1. Մեր այս ուսումնասիրութեան վերջն ի վիճակի պիտի ըլլանք հաստատելու թէ Սոկրատայ Հայերէնը՝ զոր Մ. Խորենացի կը գործածէր, Ս. Սեղբեստրոսի Վարքը կը բովանդակէր։ Արդ Կոստանդիանոսի նկատմամբ գրուած ծանօթութեան առաջին կէսը (գլ. ՁԳ) այն գրութենէն փոխառեալ ըլլալով՝ շատ հաւանական է որ երկրորդ կէսն ալ (գլ. ՁԸ) միեւնոյն աղբիւրէն առնուած ըլլայ։

---

[1] Acta, § 21։

[2] Համմտ. քիչ մը վերը՝ եջ 17։ — Եթէ մեր այս ենթադրութիւնը սխալ ցուցուի, յօժարակամ պատրաստ ենք ընդունիլ թէ Վարուց Ս. Բոռոֆլլոսի հայերէն թարգմանութիւն մը կար։ Հայերէն Յայսմաւուրքին մէջ Ապրիլ ԻՋ օրուան տեղը գտնուած Վարուցս քաղուածոյքը կ'երեւայ մեզի թէ այժմու յունարէն բնագրէն համառօտուած է։ Յայսմաւուրքն՝ որ 1733ին ի Կ.Պոլիս տպագրուած է։ Վարուցն հեղինակին անունը չի տար. բայց Փարիզի մէկ ձեռագիրը յունարէնին համեմատ Յովհաննու Նիկոմեդացւոյ կ'ընծայէ։ (Man. arm. Nr. 89.)

2. Γαλλίους բառին "Գաղղիոսի" տառադարձութիւնը համեմատ է ἀρίολος եւ μαρσικός բառերուն "արիոլական" եւ "մարսիկեան" փոխուելուն[1], եւ կրնայ ուրիշ նշաններուն հետ միանալով ցուցնել միեւնոյն աղբիւրէ յառաջ գալը:

3. Ասոր վրայ կ'աւելնայ բաւական հետաքրքրական մանրամասնութիւն մը: Մ. Խորենացւոյն այն խօսքին համեմատ՝ որուն համար նշանակեցինք թէ Ս. Սեղբեստրոսի Վարքէն քաղուածք մըն է, Լիկինիանոս Գաղղիա խաւարուած է որպէս զի բովերու մէջ աշխատի. ("դնել ի մետաղս:") Այս վերջին մանրամասնութիւնը կը ցուցնէ որ հեղինակը թանձր տգիտութեան մէջ էր հռոմէական կայսրութեան եւ իւր ինքնակալաց նկատմամբ: Յունարէն բնագիրն այսպիսի բան մը չունի եւ միայն աքսորի վրայ կը խօսի: Բայց Մ. Խորենացի այստեղ չէ միայն որ կը յիշատակէ առաքուիլն ի բովս: Երկու գլուխ ետքն ալ (գլ. Ղ.) կը պատմէ թէ Կոստանդիանոս զԱրիոս բովերու աշխատութեան աքսորեց. ("Եւ ընդ նոսին տարասահմանեաց ի մետաղս.") արդ պատժոյ այս ծանրացումն կը գտնենք Սոկրատայ հայերէնին մէջ, եւ ուրիշ հեղինակի քով չենք հանդիպիր: Սոկրատ կ'ըսէ բառ առ բառ այսպէս. "Յետ սահմանի կանոնի սուրբ ժողովոյն, եւ տարասահմանութեան Արիոսի ի մետաղս ի թագաւորէն . . .:[2]" Այստեղ կը տեսնենք թէ ուստի առնուած է Մ. Խորենացի յիշեալ տեղեկութիւնը: Սոկրատայ յունարէն բնագիրը պարզապէս կ'ըսէ՝ "Եւ հրամանաւ թագաւորին առաքեցաւ յաքսորս." (Βασιλέως δὲ πρόσταγμα . . . εἰς ἐξορίαν ἀπέστειλεν.) Այս այլեւայլ տեղերն ակնյայտնի կերպով

---

[1] Տես վերը՝ էջ 3:

[2] Սոկրատայ հայերէնին այս հատուածոյն՝ ինչպէս նաեւ ուրիշ տեղեր ալ, զորոնք առիթ պիտի ունենամ ի մէջ բերելու, պարտական եմ Հ. Բարսեղ Սարգիսեան Վ.-ի անսպառ բարեացակամութեան:

մէկ եւ մի միակ թարգմանիչ մը մատնանիշ կ'ընեն, որ կ'երեւայ թէ աքսորանք մ'առանց բովերու աշխատութեան չէր ըմբռներ. եւ չէր խորհրդածած թէ այնպիսի պատիժ մը կրնա՞ր գործադրուիլ ինքնակալի եւ թէ գործադրուա՞ծ է այն հերետիկոսաց վրայ [1]։

Վերջապէս 4. Մեր այս ՁԸ գլխուն նախընթաց եւ հետեւորդ գլուխներն ամէնն ալ Սոկրատայ հայերէնէն փոխառութիւններ կը ցուցընեն։ Այն գրութենէն է որ ՁԹ գլուխն Նիկիոյ ժողովոյն Հարց անուանքն առած պիտի ըլլայ, եւ Ղ գլուխը՝ Արիոսի ի մեռաղս աքսորուելու դատապարտութիւնը։ Արդէն ուսումնասիրեցինք ՁԳ գլխուն աղբիւրները, եւ կը կարծենք՝ որ շատ կարեւոր կէտ մըն է, թէ նաեւ Սրբուհւոյ Նունէի եւ Վրաց դարձի պատմութեան (գլ. ՁԶ) աղբիւրն ուրիշ տեղ փնտռելու չէ, բայց եթէ Սոկրատայ Ա գրոց Ի գլխուն մէջ։

Այժմ պիտի ջանանք ապացուցանել զայս։

---

1 Հմմտ. Մ. Խոր. Գ, գլ. ԼԳ. "Սա դարձոյց զամենայն Հարս սուրբս, որք յաղագս ուղղափառութեանն արտասահմանեալ էին ի մեռաղս։" Այստեղ ալ Մ. Խորենացի Սոկրատէն կախում ունի՝ Ե. գլ. Բ, ուր սակայն պարզ աքսորքի վրայ է խօսքը. (. . . τοὺς . . . ἐξορισθέντας ἀνέκαλει.) Կրնանք յառաջուընէ իսկ ըսել որ հայերէն թարգմանութեան մէջ "ի մեռաղս" յաւելուածը պիտի գըտնուի։

Դ.

“Հայոց Պատմութեան„ Բ գրոց ամբողջ ՁԶ գլուխը բռնած է Սրբուհւոյն Նունէի եւ Վրաց դարձի պատմութիւնը: Մովսիսի Խորենացւոյ շատ մը պատմածներուն բախտին հակառակ՝ այս մասը կը գտնուի նաեւ ուրիշ պատմագրաց քով:

Զայն գրի առնողներէն առաջինն է Ռուփինոս՝ իւր այն երկու գրոց մէջ, զորոնք աւելցուցած է Եւսեբիոսի Եկեղեցական Պատմութեան. իւր լատիներէն թարգմանութեան վրայ. (Ա, 10:) Ռուփինոս այն պատմութիւնն առած էր Վրաց մէկ թագաւորէն՝ Bacurius, այսինքն է “Բակուր„[1] անուն, որ անցած Հռոմայեցւոց ծառայութեան մէջ մտած էր եւ Ադրիանուպոլսոյ ճակատին ժամանակ՝ ուր Վաղէս կորսուեցաւ (378), ինքնակալին անձնապահաց մէկ մասին հրամանատար էր: Թէոդոսի թագաւորութեան ժամանակ Բակուր, զոր Ռուփինոս “այր բարեպաշտ եւ բարեկամ ճշմարտութեան„ կը կոչէ, բարձրացաւ Ծառայից Կոմսի կամ Վերատեսչի բարձր աստիճանին: Գովութեամբ իւր վրայ կը խօսին Մարկեղոս Ամմիանոս եւ Զոսիմոս[2]: Լիբանիոսի թղթերէն երկուքն իրեն

---

[1] Բակուր անուամբ Վրաց թագաւոր մ'ալ կը գտնենք Կորեան գրած Մեսրոպայ վարուց մէջ. (տպ. Վենետ. 1833, էջ 15:) Հմմտ. Մ. Խոր. Գ. գլ. ԾԴ:

[2] Ամմ. Մարկ. ԼԱ. 21: Զոսիմոս հեթանոս պատմիչը Բակուրն հայազգի կ'ըսէ եւ կը յայտնէ թէ “ազատ էր յամենայն չարութենէ„: (Βακούριος, ἕλκων μὲν ἐξ Ἀρμενίας τὸ γένος, ἔξω δὲ πάσης κακοηθείας ἀνήρ. IV, 57.)

ուղղուած են[1]։ Ռուփինոս զինքն Երուսաղէմ ճանչցաւ, ուր կը նստէր իբրեւ Պաղեստինի սահմանաց պաշտպան սահմանակալ եւ յաճախ յարաբերութիւն ունեցաւ անոր հետ։ Հոն անոր բերնէն լսեց Վրաց դարձի պատմութիւնը[2], ուստի 397էն յառաջ, վասն զի այս տարին Ռուփինոս Արեւմուտք դարձաւ[3], ուր խմբագրեց իւր "Եկեղեցական Պատմութիւնն" 401 կամ 402ին[4]։ Այսպէսով իւր վկայութիւնը շատ աւելի կանուխ է ժամանակաւ քան Մովսիսի Խորենացւոյն։

Սոկրատ միեւնոյն իրերը կը պատմէ՝ ըստ Ռուփինոսի[5], բայց ոչ առանց աւելցընելու անոր վրայ ինչ ինչ բարեքմունք, սակայն որոնց ամէնն ալ յաջող չեն։ Արդ Սոկրատ կը գրէր իբր 440ին, ուստի նաեւ ինքը Մովսէս Խորենացիէն յառաջ՝ ինչ ժամանակի ալ դնենք այս վերջինոյս գրութիւնը։

Արդ ընդունելով՝ ինչպէս արդէն ցուցուցինք որ Սոկրատայ հայերէնէն փոխառութեան հետքեր կան Մ. Խորենացւոյ Բ գրոց վերջին գլուխներուն մէջ, կը յորդորուինք ի հարկէ խնամով համեմատել Վրաց դարձի նկատմամբ եղած բնագիրները, եւ հետազօտել որ մի՞ գուցէ Բակուրի պատմութիւնը՝ Ռուփինոսի եւ Սոկրատայ միջնորդութեամբ իրեն անցնելով՝ ըլլայ այն աղբիւրն, որմէ մեր հեղինակը քաղած առած է Սրբուհի Նունէի պատմութիւնը։ Դժբախտաբար այս ուսումնասիրութեանս ձեռնարկելու համար մեր տրամադրութեան ներքեւ

---

[1] Հմմտ. Վալեսիոսի կցած ծանօթութիւնն յԱմմ. Մարկեղ. ԼԱ, 12. ed. de Gronovius, Lugd. Batav. 1693 p. 697.

[2] "Զայսոսիկ այսպէս եղեալս պատմեաց մեզ այր հաւատարիմ Բակուր, արքայ այնր ազգի, եւ առ մեզ կոմս Տառայից, (որոյ մեծագոյն իմն խնամք էին եւ կրօնից եւ ճշմարտութեան,) յորժամ ընդ մեզ համաշունչ կեայր յԵրուսաղէմ, մինչդեռ Սահմանակալ էր Պաղեստինի"։ (Եկեղ. Պատմ. Ա. 10։)

[3] Rufini Opera, ed. Migne, c. 12.

[4] Անդ, c. 403։

[5] Պատմ. Եկեղ. Ա, 20։

Սոկրատայ հայերէն թարգմանութենէն Ա. գրոց Ի գլխուն միայն մէկ մասն ունինք, եւ ստիպուած պիտի ըլլանք այս թերին լրացնել յունարէն բնագրով։

Երկու հեղինակաց՝ Սոկրատայ եւ Խորենացւոյ՝ պատմածներն առջին անգամ կարդալով՝ բաւական շփոթած կը մնայ մէկը։ Պատմուածը միեւնոյնն է՝ գլխաւոր դէպքերուն մէջ։ Բայց մասունքն որ Սոկրատայ քով մանրամասնութեանց շռայլութեամբ մը պատմուած են, Խորենացւոյ քով ծայրաքաղ համառօտութեան մը կերպարանք կ'առնուն՝ այնպէս հոծ ու սեղմ, որ երբեմն մթին իսկ կ'ըլլան։

Ասոր փոխարէն Մ. Խորենացւոյ պատմածն շատ մը մանրամասնութիւններ ունի, զորոնք յոյն պատմիչը բոլորովին կ'անգիտանայ, այսպէս՝ յատուկ անուանք, աշխարհագրական տեղեկութիւնք, Ս. Գրքէն կոչմունք, Հայոց աշխարհի պատմութեան հետամերձեցուցմունք եւն։ Աւելի խորին քննութիւն մը կը ցուցընէ անմիջապէս որ այս մանրամասնութեանց մեծ մասն կախումն ունի այն եղանակէն որով Մ. Խորենացի սովորաբար կը գործածէ իւր աղբիւրները. եւ ով որ այսպիսի ուսումնասիրութեանց որչափ ալ քիչ՝ ընտելացած է, չի յապաղեր պատմուածքին հիմնական մասն բաժնել անջատել այն ամէնէն որ խմբագրին յատուկ է։ Բաց աստի այս յաւելուածներուն մէջ գրեթէ հատ մ'ալ չկայ, որուն համեմատական կտորներ չկարենանք գտնել Հայոց Պատմութեան ուրիշ մասերուն մէջ։ Այս եկամուտ տարերքն ի բաց հանելէն ետքը մեզի կ'երեւայ թէ Մ. Խորենացւոյ աւանդածը համառօտութիւն մըն է Սոկրատայ պատմածին։

Վրաց դարձի պատմութիւնը կրնանք յաջորդ երեք կէտերուն ամփոփել՝ որոնք հասարակաց են

Ռուփինոսի, Սոկրատայ եւ Մ. Խորենացւոյ պատմածներուն:

Ա. Քրիստոնեայ օտար կին մը կ'երթայ ի Վիրս. եւ հոն խստակեաց կեանք մը վարելով՝ հրաշքներ ընելու պարգեւը կը ստանայ: Երկրին Թագաւորին կինը կը բժշկէ, եւ Աւետարանի քարոզութիւնը լսել կ'ընէ:

Բ. Երկրորդ օրը (կամ քանի մ'օր ետքը) Թագաւորն որսի ելած ժամանակ խաւարին մշուշէ մը կը բռնուի յանկարծ, որով ճամբան կը կորսնցընէ: Սարսափած՝ յօգնութիւն կը կոչէ այն օտարին Աստուածը, եւ կը խոստանայ զանիկայ պաշտել, եթէ խաւարը փարատի: Խնդիրքը լսելի կ'ըլլայ, եւ Թագաւորը կը դառնայ:

Գ. Թագաւորն այժմ ինքնին քարոզիչ ըլլալով Աւետարանի, կ'ուզէ որ իր հպատակաց ալ հաղորդէ նոյն հաւատքը. Բայց ասոր համար հարկաւոր կ'ըլլայ հրաշք մը: Հրաշքը կը կատարուի, եւ վրայ ժողովուրդը քրիստոնէութիւնը կ'ընդգրկէ:

*Այս հակիրճ համառօտութեանց իւրաքանչիւրն այժմ պիտի առնունք եւ համեմատենք Սոկրատայ եւ Մ. Խորենացւոյ բնագիրները:*

*Ա. Այս մասն՝ որ Սոկրատայ յոյն բնագրին մէջ (— զոր միայն աչքիս առջեւն ունիմ հոս, —) շատ զարգացած է, Մ. Խորենացւոյ քով չափազանց հոծ ու սեղմ է: Չեւի մի միակ նմանութիւնն, — թէեւ այս ստոյգ է որ կարեւորմըն է, — կը գտնենք պատմութեան սկիզբն: „Ժամանակ է այժմ ասել թէ զիարդ յայնմ ժամանակի եւ Վիրք դարձան ի քրիստոնէութիւնն: Կին ոմն ...„ կը գրէ Սոկրատ.*
*(Καιρὸς δὲ ἤδη λέγειν, ὅπως καὶ Ἴβηρες ὑπὸ τὸν αὐτὸν χρόνον ἐχριστιάνισαν. Γυνή τις ...)*
*— „Բայց յաղագս հաւատոյ Միհրանայ եւ աշխարհին Վրաց ասել կայ մեզ առաջի[1]: Կին ոմն ...„*

[1] Մ. Խորենացւոյ տպագրութեանց մէջ այս խօսքը ՁԵ գլխուն վերջին է:

կը գրէ Մ. Խորենացի։ Երկու բնագրաց ազգակցութիւնն ակնյայտնի է։ Միւս կողմանէ Մ. Խորենացի պատմութեան կերպարանքը բոլորովին կ'երպարանափոխ կ'ընէ՝ յաւելլով՝

1. Կնոջ անունը՝ Նունէ, որ Սոկրատայ քով՝ զերծ է, իսկ Խորենացւոյ քով Ս. Հռիփսիմեանց ընկերներէն մին եղած է՝ որ ի Վիրս փախստական գնացած ըլլայ։

2. Վրաց թագաւորին անունը՝ Միհրան, որ ամենայն ուրիշ բան չէ, բայց եթէ "տոռմընորդ" մը իբրեւ հպատակ Հայոց աշխարհի արքային[1]։

3. Այն տեղւոյ անունն՝ ուր դէպքը կը պատահի, Մծխէթ՝ Վրաստանի մայրաքաղաքը։

4. Հրէից առ Յիսուս ըրած հարցումը, զոր Միհրան Սրբուհի Նունէի կ'ուղղէ. "Որո՞վ իշխանութեամբ առնես զայդ". (Մատթ. ԻԱ, 23. Համմ. Գործ. Դ. 7։) Ըստ Սոկրատայ ընդհակառակն թագաւորը դեռ եւս չի տեսներ զսրբուհին։

Վերջապէս 5. պատմուած դէպքին Տրդատայ թագաւորին դարձին հրաշախառն դիպաց հետ համաժամանակեայ ըլլալը, մինչդեռ Սոկրատայ "յայնմ ժամանակի" (ὑπὸ τὸν αὐτὸν χρόνον) խօսքը Կոստանդիանոսի թագաւորութիւնը կը ցուցընէ։

Բ. Երկրորդ հատածն ալ՝ առաջնոյն պէս՝ երկու հեղինակաց քովն ալ միեւնոյն եղանակաւ կը սկսի։ Մինչդեռ Սոկրատայ հայերէնը[2] կ'ըսէ "Յետ աւուրց ինչ ելանէր յորս Թագաւորն", — Մովսէս Խորենացի այսպէս ունի. "Եւ եղեւ ընդ աւուրսն ընդ այնոսիկ ելանել Միհրանայ յորս"։ Երկու բնագրաց մէջ եղած տարբերութիւնը պարզապէս ոճոյ կը վերաբերի, եւ ծագած է այն արուեստականութենէն՝ որով Մ. Խորենացի յաճախ կը նկարէ Ս.

---

[1] Համմ. Բ, գլ. ՁԵ. Գ, գլ. Ջ։

[2] Այս եւ յաջորդ հատածին համար աչքերնուս առջեւն ունինք Սոկրատայ հայերէն թարգմանութիւնը։

Գրքին բացատրութեան կերպերը գործածել[1]։ Ընդ հակառակն յոյն Սոկրատն նշանաւոր տարբերութիւն մը կ'ընծայէ ըսելով թէ թագաւորն երկրորդ օրը որսի ելաւ. (Μεθ᾽ ἡμέραν δὲ ἐξελθόντι αὐτῷ εἰς θήραν ...) Պատմութեան մնացեալ մասն ալ աւելի զարգացեալ է Սոկրատայ քան Խորենացւոյ քով[2]։ Վերջինս՝ մանաւանդ վերջերն այնպէս կը համառօտէ որ դժուար իսկ կ'ըլլայ հասկընալը։ Մինչեւ անգամ կը մոռնայ յիշատակել մեգին փարատիլն՝ ընթերցողին սրամտութեան թողլով պատմուածքին թերի մասերը լրացընել։ Այս ոճով միայն այն ատեն կը գրէ մէկն, երբ համառօտ քաղուածք կ'ընէ եւ ոչ երբեք՝ երբ ազատ յանձնէ կը պատմէ։ Միւս կողմանէ Խորենացի կ'աւելցընէ՝

1. Սուրբ Գրքէն երկու խօսք այս հրաշախառն մթութեան բնութեան նկատմամբ. (Յոբ, ԼԲ. 34. Ամովս, Ե. 8։)

2. Այն որ Միհրան կը յիշէ Տրդատայ պատահածներն այն վայրկենին որ վերջինս ալ որսի կ'ելլէր, եւ կը սարսափի մտածելով որ իրեն ալ կրնան նմանապէս աստուածային պատուհասք հասնիլ։ Այս կտորն Ագաթանգեղոսէն փոխառեալ բացատրութիւններ կը բովանդակէ[3]։

Գ. Մ. Խորենացի կը պատմէ թէ Միհրանին դարձէն ետքն եւ սրբուհւոյն Նունէի խնդրելովը՝ պատգամաւորք խաւրուեցան Ս. Գրիգորի, որպէս

---

[1] "Եւ եղեւ ընդ աւուրսն ընդ այնոսիկ„. Ղուկ. Բ. 1 եւ յաճախ։

[2] Նշանակենք հոս փոքր մանրամասնութիւն մ'որ թերեւս առանց կարեւորութեան չէ։ Մ. Խորենացի դէպքը լերանց մէջ կը դնէ ("ի դժուարս լերանց„։) Սոկրատ ալ կը յիշէ լեռները (— "Ունէր միգային խաւար՝ ուր էր որսն, զլերինսն եւ զդաշտս„.) բայց այս՝ Ռուփինոսի բնագրին վրայ աւելցուած մանրամասնութիւն մըն է, մինչ Ռուփինոս միայն անտառներ կը յիշէ (in silvis.)։

[3] Հրտ. Տփղիս, էջ 128. տպ. Վենետ. էջ 160։

զի իմանան թէ ի՞նչ կը հրամայէ որ ընեն այսպիսի պարագայից մէջ։ Ս. Լուսաւորիչ կը պատասխանէ թէ իրեն օրինակին հետեւելով՝ պէտք է կործանել կուռքերն եւ Քրիստոսի խաչը կանգնել եւ սպասել հոգեւոր առաջնորդաց հասնելուն։ Սոկրատայ համեմատական խօսքն բոլորովին ուրիշ տեղ մը կը գտնուի՝ գլխուն վերջերը, եւ հոն իրերն շատ տարբեր կերպով աւանդուած են, այսինքն Կոստանդիանոսի կը խաւրուին պատգամաւորք[1] Վրաց ժողովրդեան դարձէն ետքը, որպէս զի հռոմէական ժողովրդեան հետ դաշնադիր ըլլան, եւ եպիսկոպոս մ՚ու քահանաներ կը խնդրեն։

Իսկ Մ. Խորենացւոյ քով պատմուած հրաշքներուն գալով՝ բառերու մերձեցմունք եւ առանձնայատուկ բացատրութիւնք ամենեւին տարակոյս չեն թողուր թէ ուստի են։ Ահա ինչ ասութեամբք կը բացատրէ ինք զինք Սոկրատ։ “Եւ հրամայէր ուրեմն կանգնել զնշան խաչին Քրիստոսի. եւ զի ոչ էր գործ ճարտարի՝ արհամարհեալ լինէր ի բազմաց։ Իսկ սուրբ կինն կայր յաղօթս զգիշերն ամենայն, եւ ի վաղիւն լուսաւորեալ լինէր նշան խաչին, որ հիացոյց զհեռաւորս եւ զմերձաւորս, եւ հաստատեցան ի հաւատոն։„ Ընթերցողը պէտք է միայն համեմատել այս հատակտորն Մ. Խորենացւոյ ՁԶ գլխուն մէջ հրաշախառն խաչին երեւման վրայ պատմածին հետ, եւ կը համոզուի որ իւր առջեւն ունի այն աղբիւրն՝ ուրմէ Խորենացի քաղած է։ Ստոյգ է որ մեր յայժմ տեսածին հակառակ՝ այստեղ Մ. Խորենացի ընդարձակօրէն ճոխացուցեր է սկզբնագիրը։ Իւր պատմածը շատ ծանօթ ըլլալով՝ աւելորդ է զայն ամբողջովին ի մէջ բերել։ Կը բաւէ մեզի նշանակել իւր բացատրութեանց մէկ քանին՝

---

[1] Ռուփինոս կը յաւելու “խնդրանօք գերւոյն„ (captivae monitis.) Թերեւս հոս Սոկրատայ յոյն բնագրին մէջ պակաս մը կայ։ Դժբախտաբար այս տեղւոյն հայերէն թարգմանութիւնը չունիմ։

որ ամէնէն աւելի կը մատնեն փոխառութիւնը. Միրք «ուսան՝ եթէ (պարտ է երկրպագել) նշանի խաչին Քրիստոսի. զոր արարեալ կանգնեցին . . . տեսին փայտ կոփեալ՝ ոչ ճարտարաց ինչ գործ, յոլովք քան զսակաւս արհամարհեցին։»

Եթէ պատմութեան շարունակութիւնն, այսինքն հրաշախառն խաչին երեւումն Մ. Խորենացւոյ քով այնչափ պարզ չէ որչափ Սոկրատայ քով, սոր պատճառն է անշուշտ այն որ առաջինը «լուսաւորեալ լինէր նշան խաչին» բառերուն իմաստը սխալմամբ այնպէս հասկցեր է իբր թէ լուսաւոր խաչ մ'երեւցեր է՝ անկախ նախնաբար տնկուած խաչէն։ Եթէ աւելցնենք այս խաչին վրայ սեան ամպ մը եւ աստղներ՝ որոնք Ագաթանգեղեայ մէջ եղած Ս. Գրիգորի տեսլեննէն առնուած են, այն ժամանակ կը հասկընանք առանց դժուարութեան թէ ինչ զարգացմունք ընդգրկած է Մ. Խորենացի։

Նշանակենք վերջապէս նաեւ այս յաւելուածներն, որ սկզբնական պատմութիւնը կերպարանափոխ ընելու նպաստած են։

1. Շատ մանրապատում՝ բայց քիչ պատմական մանրամասնութիւնք Մծխիթայ բնակչաց պաշտած դից եւ անոր տրուած սեպհական պաշտաման նկատմամբ։

2. Տեղագրական շատ ճշգրիտ տեղեկութիւններ քաղաքին դրից նկատմամբ երկու գետերուն մէջտեղ, որոնց մին մեծ է (Կուր) եւ միւսը՝ փոքր (Արագուա։)[1]

ՉԶ գլուխն վերջապէս կ'աւարտի հարեւանցի նկարագրելով սրբուհւոյ Նունէի Վրաստանի

---

[1] Ստուգիւ տարօրինակ է որ Խորէն Ծ. Վ. Ստեփանէի աշխարհաբար թարգմանութիւնն այս նկատմամբ Լանկլուայի գործած մէկ սխալը յառաջ կը բերէ (Ծան. 507.) եւ Կուր գետը նոյն կը համարի Երասխայ հետ։

ուրիշ գաւառներուն մէջ ունեցած առաքելօրէն գործունէութիւնը։ Սոկրատայ եւ Ռուփինոսի բնագիրք այսպիսի բան մը չունին։ Բայց կ'երեւայ թէ Մ. Խորենացի այս տեղեկութիւնը խմբագրած է նմանելով Ագաթանգեղեայ մէջ Ս. Գրիգորի առաքելական վաստակոց համառօտ նկարագրութեանն[1]. առով առիթ ունեցած է փոխ առնելու վերջինէս քանի մ'աշխարհագրական անուններ, եւ համարձակած է անմիջապէս առոր վրայ յաւելուլ՝ "որպէս աւանդէ մեզ Ագաթանգեղոս"։ Այս նախադասութիւնն՝ որով սրբուհւոյն Նունէի պատմութիւնը կ'աւարտի, Մ. Խորենացւոյ գործոյն մէջ մի միակը չէ։ Նոյնը կը գտնենք նաեւ ՁԳ գլխուն ետեւն, որ՝ ինչպէս տեսանք՝ Ս. Սեղբեստրոսի Վարքէն քաղուածոյք մըն է, եւ ուր այս բանաձեւը յեցեալ է նմանապէս Կոստանդիանոսի թշնամեաց ընջման նկատմամբ Ագաթանգեղոսէն առնուած մէկ հակիրճ խօսքին վրայ[2]։ Կարելի՞ է այս խօսքը՝ զոր Խորենացի կը կրկնէ յաճախ, ուրիշ բան համարել, բայց միայն իւր գործածած աղբերաց յայտյանդիման կեղծումն, մանաւանդ երբ ստոյգ է որ յիշեալ գլուխներուն մէջ պատմուածներէն բառ մ'ալ չէ ըսած Ագաթանգեղոս։

Կարծենք թէ Մ. Խորենացւոյ Բ գրոց ՁԶ գլուխը քննադատական վերլուծման ենթարկելով՝ յաջողեցանք մեծ ցուցընել, որ նոյն գլխոյ մէջ գտնուած Վրաց դարձի պատմութիւնն՝ ի բաց առեալ քանի մը յաւելուածքն՝ զոր նշանակեցինք[3],

---

[1] Տպ. Տփղիս, էջ 485. տպ. Վենետ. էջ 624։
[2] Տփ. էջ 499. տպ. Վենետ. էջ 643։
[3] Հետաքրքրական կ'ըլլար հետազօտել թէ արդեօք այս յաւելուածները Մ. Խորենացւո՞յ սեպհական են թէ արդեօք կարելի է որ տեղական աւանդութենէ մը փոխառեալ ըլլան։ Առ այժմ այս բանս ուսումնասիրելու տեղ չունինք։ Շատանանք նշանակելով այն իրողութիւնն որ Հայոց աշխարհի հին մատենագիրներէն եւ ոչ մին այս դէպքերուս վրայ կը խօսի։

Հիմնովին միեւնոյնն է Բակուրի պատմութեան հետ, զոր կ'աւանդեն Ռուփինոս եւ Սոկրատ[1]: Մ. Խորենացւոյ պատմածին էական մասը քննելով՝ տեսանք որ համառօտութիւն մըն է այն Սոկրատայ Ա. գրոց Ի գլխուն: Վերջապէս, նաեւ բառերու ու բացատրութեանց իսկ նմանութիւնք Սոկրատայ հայերէնը մատնանիշ կ'ընեն: Այժմ մեր այս հանած երեք հետեւութիւնքն ալ պիտի արդարացընենք՝ վերջնոյն ակնյանդիմանութեան բոլոր նկարագիրքն ընծայելով:

Պատմութեան այն մասն՝ ուր ամենէն աւելի աչքի զարնող նմանութիւններ գտանք երկու բնագրաց մէջ, անշուշտ է լուսաւոր խաչի հրաշքին մասը: Արդ այս մասն միայն հայերէն Թարգմանութեան մէջ կը գտնուի: Յունարէն բնագրին մէջ չկայ այն, որմէ չի կրնար դուրս ինկած ըլլալ, վասն զի նաեւ Ռուփինոսի լատիներէն բնագրին մէջ ալ չկայ:

Ռուփինոս եւ Սոկրատ բոլորովին ուրիշ հրաշք մը կը պատմեն. Վիրք իրենց դարձէն ետքը եկեղեցի մը կը շինեն, բայց՝ ամէն ճգանց հակառակ՝ սիւն մը կանգնել չեն կրնար. սակայն գերւոյն աղօթելովն սիւնն ինք իրմէն կը կանգնի իւր պատուանդանին վրայ: Սոկրատայ հայերէն Թարգմանութիւնն ալ ալ ունի նոյնպէս այս երկրորդ հրաշքին պատմու-

[1] Վրաց դարձի պատմութեան հայկական խմբագրութիւնը մի միակը չէ: Ռուփինոսի պատմածը յարմարցուած է նաեւ Եմենի՝ ինչպէս եւ Հնդկաց (Եթովպիայի) դարձին, զոր կը գտնենք Յակոբիտեանց արաբական Յայսմաւուրքին մէջ Սեպտ. 17ին եւ եթովպական Յայսմաւուրքին մէջ ալ նոյն օրը: Բայց հոս "սուրբ կինն„ առած է Թէոգնոստէ անունը: Նոյնին վրայ կը խօսուի արդէն Է դարուն վերջերն եղող յոյն ժամանակագրին՝ Յովհաննու Նիկիացւոյ գրութեան մէջ, որմէ միայն եթովպացերէն Թարգմանութիւն մ'ունինք: Համմ. Zotenberg, La Chronique de Jean, évêque de Nikiou. Paris, 1879, p. 76 եւն: — Synaxarium, das ist Heiligenkalender der Coptischen Christen, aus dem Arab. übers. v. F. Wüstenfeld, Gotha 1879, p. 32 եւն:

թիւնք, զոր Մ. Խորենացի պատշաճ չէ համարած յիշատակել։

Ըստ այս ամենայն նախընթացից ուրեմն կը տարակուսինք հոս ալ միեւնոյն ընդհանուր հետեւութիւնն հանել՝ զոր հանած ենք արդէն երբ Ս. Սեղբեստրոսի Վարուց վրայ էր խնդիրը, այսինքն՝ Մովսէս Խորենացի գործածած է Սոկրատայ Եկեղեցական Պատմութեան հայերէն թարգմանութեամբ մը, եւ այս թարգմանութեան արդէն ընդմիջարկեալ էր։

---

Այստեղ կ'ընդհատեմ՝ մինչեւ որ Սոկրատայ հայերէնը լոյս տեսնէ, այն հետազօտութիւնքն զոր սկսայ Ս. Սեղբեստրոսի յունարէն Վարուց մէկ կտորին առթիւ, եւ որոնք զիս շատ աւելի հեռուն տարին՝ զոր յառաջուընէ ամենեւին չէի կրնար ենթադրել։ Բ գրոց ՁԶ եւ ՁԸ գլուխներու քննութեամբ նորագոյն եզրակացութիւններ հանելէն ետքը թերեւս զարմանայ ընթերցողն որ չեմ փորձեր լրացընել եւ մանաւանդ ճշգրտել աւելի եւս այն հետեւութիւնքն, զոր հանած եմ երկրորդ յօդուածիս մէջ։[1] Ստուգիւ չափազանց կը ցաւիմ որ Սոկրատայ հայերէնէն միայն քանի մը հատակտորներ ունիմ տրամադրութեանս ներքեւ. սակայն թէեւ իմ աղբիւրներս սակաւ են, անոնց ուսումնասիրութիւնն այնպէս պտղաբեր եղաւ որ կարծեմ թէ կրնամ այսօրուընէ շատ մը հետեւութիւններ իբրեւ արդէն ստացեալ նկատել։

Ա. Մովսէս Խորենացի Բ գրոց ՁԳ գլխէն սկսեալ բազմաթիւ փոխառութիւններ ըրած է Սոկրատայ Եկեղեցական Պատմութենէն։ Այս դիւրաւ կը հասկցուի։ Մինչեւ ՁԳ գլուխը Խորենացի յաճախ գործածած է, եւ ինծի կ'երեւայ թէ իբրեւ առաջ-

1 Տես վերը՝ էջ 7։

նորդ առած է Եւսեբիոսի Ժամանակագրութիւնն[1] եւ Եկեղեցական Պատմութիւնն: Կոստանդիանոսի ժամանակին հասնելով՝ այս առաջնորդը պակսեցաւ: Բնականաբար գտաւ զայն վերստին Սոկրատայ Պատմութեան մէջ, որ Եւսեբեայ շարունակութիւնը կը համարուի եւ նոյնպէս թարգմանուած էր ի Հայերէն: Անկէ պիտի առնու Հռոմէական ինքնակալաց յաջորդութեան կարգը, ժողովոց եւ նկատմամբ տեղեկութիւններ: Պարզապէս զուգադիպութի՞ւն է արդեօք որ երկու գրութեանց մէջ ալ նշանակուած գահակալութեան վերջին փոփոխումն է Թէոդոսի Բ յաջորդելն Արկադեայ եւ որ պատմուած է գրեթէ միեւնոյն բացատրութեամբք[2]: Կրնանք կանխաւ գուշակել՝ առանց վտանգի սուտ գուշակ մ'ըլլալու՝ որ Սոկրատայ հայերէնին եւ անոր ընդմիջարկութեանց ուսումնասիրութիւն մը "Հայոց Պատմութեան" Գ գրոց շատ մասերուն վրայ նոր լոյս պիտի սփռէ[3]:

Բ. Խորենացւոյ գործածած Սոկրատայ հայերէն թարգմանութիւնն էր այն՝ զոր մեր առջեւ կը դնէ Ս. Ղազարու Թիւ 693 ձեռագիրը: Զայս լիովին կ'ապացուցանեն այն ամէն կոչմունքն՝ զոր ի մէջ բե-

---

[1] Հմմտ. Բ, գլ. ԿԹ եւ Ժամանակագր. Բ, էջ 168 (տպ. Աւգեր. 10:)

[2] "Վախճանեալ Արկադեայ թագաւորին, . . . ընդ որդւովն՝ փոքուն Թէոդոսիւ ՚անկան կողմանք Արեւելից," Սոկրատ., Է, 1. (Τοῦ δὴ βασιλέως Ἀρκαδίου τελευτήσαντος . . . ὑπὸ δὲ τῷ υἱῷ τῷ νέῳ Θεοδοσίῳ . . . τὰ τῆς ἑῴας ἐτάττετο. Socrate, VII, 1.) — "Վախճանեալ Արկադեայ, փոխանակ թագաւորէ նորին որդի, որ կոչեցաւ Թէոդոս փոքր.", Մ. Խորենացի, Գ, գլ. ԾԴ:

[3] Սոկրատ կ'ըսէ թէ Կոստանդիանոս մեռաւ ի Մոպսուկրենէս (ἐν Μόψου κρήναις)՝ Կապպադովկիոյ եւ Կիլիկիոյ մէջտեղ (Գ, 47:) Մ. Խորենացի այս մահը կը դնէ ի Մոպսուեստիա քաղաք Կիլիկիոյ. ("ի Մոմփսուեստ քաղաքին Կիլիկեցւոց",. Գ, գլ. ԺԲ:) Հետաքրքրական է քննել որ մի գուցէ Մոպսուկրենէս անուանն Մոպսուեստիա փոխուիլը արդէն Սոկրատայ հայերէնէն ըլլայ, որուն քով արդէն ցուցուցինք յատուկ անուանց այլայլմունք: Տես վերը՝ էջ 10, ծան 1:

րինք, ինչպէս նաեւ ընդմիջարկութիւնք։ Ստոյգ է որ Ս. Սեղբեստրոսի Վարքն ի սկզբանէ հետէ մաս կը կազմէր անոր, վասն զի այս թարգմանութեան ցայսօր ծանօթ բոլոր ձեռագրաց մէջ կը գտնուի։ Ինքն իսկ Մ. Խորենացի ակնյայտնի ապացոյց մը կու տայ այս յիշատակարանէ առնուած փոխառութեամբ մը սկսելով Սոկրատայ հայերէն թարգմանութիւնը գործածել։

Գ. Այս Թարգմանութիւնը Է դարուն վերջին տարիներէն է։ Թարգմանիչն իւր անունը չի տար, բայց կը նուիրէ իւր գործքը Ներսեհ Կամսարականի հիւպատի եւ պատրկի։[1] Արդ պատմութիւնն այս անուամբ մի միակ պատրիկ մը կը յիշէ, զայն՝ որ Հայոց աշխարհի վարչութեան գլխաւոր դրուեցաւ Յուստինիանոս Բ ինքնակալէն 690ին[2]։ Ասողիկ[3] կ'իմացընէ որ Ներսեհ երկիրը քառասուն տարի կառավարեց, եւ թէ իրեն յաջորդն եղաւ Հայոց ՃԽ թուականին (= 691—92) Սմբատ Բագրատունի։ Յունական թուաբերութեան եւ հայ ժամանակագրին մէջ իբր երկու տարուան տարբերութիւն կայ, զոր այստեղ պէտք չունինք ի նկատի առնուլ։ Ասողկայ մէկ ծանօթութիւնը կ'իմացընէ մեզ որ Ներսեհ մատենագրական ճաշակ ունէր, եւ իւր խնդրանօքն է որ Գրիգոր քորեպիսկոպոսն Արշարունեաց յօրինեց գրութիւն մը։ Միւս կողմանէ նոյն իսկ յիշատակարանին խօսքերուն համեմատ Ներսեհ արդէն պատրիկ էր, երբ Սոկրատայ հայերէն թարգմանութիւնն իրեն նուիրուեցաւ։ Ուստի ա-

[1] Թարգմանչին յիշատակարանին մէջ կը կարդանք. "Ո՛վ Տէր Ներսեհ Կամսարական, ապի(՞)հիւպատ պատրիկ որ եկեղեցեաց ես շինող միշտ . . .„ (Հ. Գարեգին, Մատենադարան թարգմանութեանց Նախնեաց, էջ 696։) — Հմմտ. Ասողիկ, տպ. Պետր. էջ 292, ուր միեւնոյն խօսքն կոչուած է ի վկայութիւն Պր. Եզեանի մէկ ձեռագրին համեմատ. ("առէհէպատ„ փոխանակ "ապէհէպատ„։)

[2] Lebeau, Histoire du Bas-Empire, ed. S. Martin, t. XIII, p. 27 եւ 28։

[3] Անդ, էջ 101։

ռանց յանգգնութեան կրնանք այս թարգմանութեան տարեթիւը դնել 690 եւ 692 տարեաց մէջ։

Ոչ ոք կրնայ ըսել թէ չափազանցութիւն մ'ըրած կ'ըլլանք, եթէ ենթադրենք որ առ նուազն տասնեակ մը տարիներ անցած են թարգմանութեան ժամանակէն մինչեւ այն վայրկեանն որ Մ. Խորենացի գործածեց զայն։ Ուստի մեր ուսումնասիրութիւնն կը հասցընէ զմեզ հետեւցընելու — առանց տեղեկութեան ուրիշ միջոցներու գիմելու՝ բայց միայն աղբերաց պարզապէս մատենագրական հետազօտութեանն, — որ Մովսէսի Խորենացւոյ ընծայուած Հայոց Պատմութիւնը չի կրնար Ը դարուն առաջին տարիներէն յառաջ գրուած ըլլալ։

Հաստատապէս համոզուած ենք որ Սոկրատայ հայերէնին հրատարակութիւն՝ որ ծանուցուեցաւ յԷջմիածին, պիտի լրացընէ եւ զօրացընէ այս հետեւութեան նպաստաւոր ապացոյցները։

*Փարիզ, 14 Մարտ 1893։*

---

# ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ

## ԵՒ

# ՊԱՐԹԵՒԱՑ ԾԱԳՈՒՄԸ

Մովսէս Խորենացի զՊարթեւս՝ եւ ըստ հետեւորդի Պարսից եւ Հայոց աշխարհի արշակունի թագաւորները՝ կը համարի Աբրահամէն սերած։ Այս՝ գոնէ նորանշան՝ կարծիքն ըստ կարելւոյն պայծառ կերպով բացուած կը գտնենք յաջորդ սա երկու տողերուն մէջ. “Ուստի եւ թագաւորեաց Արշակ քաջ, որ է ի զաւակէ Աբրահամու, ի քետուրական ծննդոց, առ ի հաստատել բանին Տեառն առ Աբրահամ թէ Թագաւորք ազգաց ի քէն ելցեն.„ (Բ. գլ. ա.) եւ “ՅԱգամայ քսաներորդ առաջնորդ նահապետ մեզ զԱբրահամ աստուածային պատմութիւնքն ցուցանեն.[1] եւ ի նմանէ եղեալ ազգ Պարթեւաց։ Քանզի ասէ, յետ մեռանելոյն Սառայի՝ առեալ Աբրահամու կին զՔետուրայ. յորմէ ծնան Եմրան[2] եւ եղբարք նորա, զոր Աբրահամ ի կեն-

---

[1] Հմմտ. Ա. Գարիէր, Մովսէս Խորենացի եւ Ազգաբանութիւնք Նահապետաց։ Փարիզ 1891, էջ 27։ (A. Carrière, Moïse de Khoren et les généalogies patriarcales. Paris, 1891.)

[2] Բուն անունն է Զիմրան (Ծնն. ԻԵ. 2) Յունական Աստուածաշնչի ձեռագիրք Ζομβρᾶν, Ζεβρᾶν, Ζεμβρᾶν կ'ընթեռնուն՝ որ կը համապատասխանեն זִמְרָן եբրայականին։ Նաեւ Հայերէն Աստուածաշունչն Զեմրան ունի, սակայն որոշեալ հայցականին նախընթաց զ նախդիրն (զԶեմրան) մէկդի թողուած է՝ ինչպէս կը գտնենք երբեմն պատահած զ տառով սկսող բառերէն յառաջ։ Մովսէս Խորենացի Զեմրան անուան զ նախատառն նախդիր կարծած է եւ կարդացած՝ Եմրան։ Այս ալ՝ այնչափ ուրիշներուն հետ՝ նոր ապացոյց մըն է թէ Խորենացի միայն Հայերէն Աստուածաշունչը գործածած է։

դանուլժեանն իւրում մնկնեաց յխաճակայ, արձակելով յերկիրն արեւելից. յորոց սերեալ ազգ Պարթեւաց, եւ ի նոցանէ Արշակ քաջ:„

Թէեւ այսպէս յստակօրէն կը հաստատէ Խորենացի, բայց իւր այս գաղափարը յաջողութիւն գտած չ'երեւար, եւ յետագայ պատմագրաց մեծագոյն մասն լռութեամբ կ'անցնի ասոր վրայէն: Սակայն այս կարծիքն ընդունած են Սամուէլ Անեցի[1] եւ Վարդան Մեծ: Վերջինս իւր "Ներբողեան ի Ս. Գրիգոր Լուսաւորիչ„ գրութեան մէջ աւելի եւս ճոխացած խմբագրութիւն մը մեր առջեւ կը դնէ՝ այնպիսի մանրամասնութեամբք, որոնց ծագումն բոլորովին անծանօթ է մեզ: "Աբրահամ, կ'ըսէ, ի ծերութեան անդ մանկացեալ ի զօրութենէն Աստուծոյ՝ ծնանէր ի կենտուրայ որդիս վեց՝ զԶեմրան եւ զՅեքսան, զՄադան եւ զՄադիման, զՅեսբուկ եւ զՍովիէ:[2] Եւ սպանեալ Զմրանայ զՅեքսան եւ զՄադիման, զահի հարեալ Աբրահամու դուցէ եւ զիսահակ սպանցէ զկնի մահու նորա, տայ նմա եւ եղբարցն ինչս, եւ արձակէ յարեւելս. յորոց շինեցաւ Բահլ քաղաք յանուն որդւոյ Զմրանայ, յորմէ եւ կոչեցաւ ազգն՝ Պահլաւ: Ուստի զօրացաւ մեծն Արշակ, որ թագաւորեցոյց ի վերայ Հայոց զՎաղարշակ եղբայր իւր:„[3]

Սոյն Վարդան իւր "Պատմութեան„ մէջ աւելի եւս յառաջ երթալով՝ համարձակօրէն կը դնէ զՀայս Աբրահամու սերնդոց շարքին մէջ՝ գրելով. "Հայրն բազմորդի մեծն Աբրահամ եղեւ ազգիս մերոյ ըստ մարմնոյ եւ ըստ հոգւոյ հայր պարծանաց:„[4]

Կրնանք ուրեմն հաստատել որ Մովսէսի

---

[1] Ժամանակագրութիւն, հրտ. Ջօհրապեան եւ Մայի էջ 9:

[2] Այս անուանց ոմանց ձեւն աղաւաղեալ է. հմմտ. Ծնն. ԻԵ, 2:

[3] Տես Սոփերք, Ե, էջ 45:

[4] Պատմ. տպ. Վենետ. 1862, էջ 29:

Խորենացւոյ Պարթեւաց ծագման նկատմամբ յայտնած գաղափարին զարգացումն — Վարդանայ փոքրիկ վէպն ուրիշ բան չէ արդեամբք, — յայն յանգեցաւ՝ որ Հայք սկսան Սեմական համարուիլ։ Սակայն հեղինակն այսպիսի բան մ'ամենեւին չէր կարծեր, երբ իւր գրութեան սկիզբներն տեսակ մ'որդիական երկիւղածութեամբ «մերոյն Յաբեթի» կը գրէր։

Թերեւս հետաքրքրութենէ զուրկ չէ հետազօտութիւն մ'ընել այժմ՝ կամ որպէս զի գըտնենք այն աղբիւրն՝ ուստի առած է Խորենացի իւր այս կարծիքը, եւ կամ որպէս զի վերստին կազմենք այն պատճառաբանութիւնն՝ որ զինքն այսպիսի եզրակացութեան մ'առաջնորդած է։

Այստեղ մեզի ամենեւին նպաստամատոյց չ'ըլլար Ս. Գրոց մեկնութեան աւանդութիւնը։ Յովսեպոս պատմչէն[1] մինչեւ Ծննդոց գրոց ամէնէն նորագոյն մեկնիչք, ամէնքն ալ արդեամբք կը միաբանին յայնմ՝ որ Քետուրայ որդիքն ներկայացուցիչ կը համարին արաբական թերակղզւոյն ցեղերուն։ Ծանօթ եւ ոչ հեղինակ մը՝ ի բաց առեալ Մ. Խորենացին՝ չէ կարծած թէ Պարթեւք ըլլան անոնք։ Ուստի առ ձեռնիս ունինք Ս. Գրոց բնագրին կցկցեալ մեկնութիւն մ'որ ըստ ամենայն հաւանականութեան՝ արդիւնք է երեւակայութեան այն մատենագրին որուն քով առաջին անգամ կը գտնենք զայն։

Բայց այն ատեն ինչ ճամբով Մ. Խորենացի հասած է Հին Կտակարանի մէկ տեղւոյն մէջ Պարթեւները հասկընալուն։

Ըստ Գարագաշեանի, որ Մ. Խորենացւոյ այս բանը խիստ քննադատութեան մ'ենթարկած է,[2] պատմաբանն Ծննդոց ԻԵ, 6 տեղւոյն մէկ բացատրութիւնը սխալ ըմբռնած է, այսինքն՝ ուր

---

1 Հնախօս. Հրէակ. Ա. ԺԵ։

2 Քննական Պատմութիւն Հայոց. Ա, էջ 225։

կ'ըսուի թէ Աբրահամ իւր հարճերու որդիքն խաւրեց "յերկիրն Արեւելից։" Ասկէ հետեւցուցած պիտի ըլլայ թէ հոս խօսքն այն երկիրներուն վրայ է՝ զոր արիական ժողովուրդք գրաւած էին՝ Տիգրիսէն անդին։ Գարագաշեան իրաւամբք կը ցուցընէ որ Ս. Գրոց լեզուաւ "Երկիր Արեւելից" եւ "որդիք Արեւելից" բացատրութիւնք այնչափ ընդարձակ նշանակութիւն չունին, եւ ընդհակառակն ուրիշ բան չեն նշանակեր՝ բայց եթէ Միջագետաց եւ Պաղեստինի մերձակայ Արաբիոյ երկիրները։ Կը յաւելու թէ ըստ մօտաց սրբազան մատենագրին՝ Աբրահամու տրուած այն խոստումը թէ "Թագաւորք ի քէն ելցեն" (Ծնն. ԻԵ, 6) կը պատկանի Թագաւորաց Իսմայելացւոց կամ Արաբացւոց, որոնց ազգաբանութիւնը կը գտնենք դրուած Ծննդոց ԻԵ եւ ԼԶ գլուխներուն մէջ, իսկ Յակոբայ տրուած նման խոստումը (ԼԵ, 1) կը պատշաճի Յուդայատանի եւ Իսրայէլի Թագաւորաց։ Ուրեմն Մ. Խորենացի սխալած է՝ Ս. Գրոց այս տեղերուն՝ որոնց վրայ հիմնած է իւր դրութիւնը, ճշմարիտ իմաստէն տարբեր իմաստ մը տալով։

Ստգտանելու բան մը չունինք Գարագաշեանի այս պատճառաբանութեան նկատմամբ։ Սակայն կարծենք թէ սխալ ճամբայ մ'առած է։ Նախ միտ չէ դրած որ Մ. Խորենացւոյ՝ Ս. Գրքէն ըրած այս կոչումն անճիշդ է։ Հին կտակարանի եւ ոչ մէկ տեղ մը կը գտնուի սա խօսքը "Թագաւորք ազգաց ի քէն ելցեն։" Մ. Խորենացւոյ մեր առջեւ դրած բնագիրն երկու տարբեր համարներու բաղադրութեան մ'արդիւնքն է՝ 1. Ծնն. ԺԷ, 6 "Թագաւորք ի քէն ելցեն." եւ 2. Ծնն. ԺԷ, 16 "Թագաւորք ազգաց ի նմանէ եղիցին" այսինքն՝ ի Սառայէ։ Պիտի ջանանք, ցուցընելու որ այս բաղադրութիւնն պտուղ է խորհրդածութեան եւ որոշ ստուերագրուած ծրագրի մը, ոչ թէ յիշողութեան սխալի մ'արդիւնք։

"Հայոց Պատմութեան" մէջ երկու գերդաստ-

տան կը գտնենք ամէն միւսներէն վեր բարձրացուած, եւ են՝ Արշակունիք եւ Բագրատունիք։ Երկուքին ալ տրուած է ազնուագոյն սկզբնաւորութիւն մ՚որչափ կրնար երազել Մ. Խորենացւոյ պէս քրիստոնեայ մատենագիր մը, այսինքն՝ Աբրահամ՝ Հայր ընտրեալ ժողովրդեան։ Սակայն այս երկու ցեղերու մէջ արժանաւորութեան տարբերութիւն կայ, եւ Բագրատունիք Արշակունիններէն աւելի ազնուագոյն ներկայացուած են։ Բագրատունիք անդրանիկ ճիւղը կը կազմեն, որ սովորաբար իբրեւ օրինաւորը կը ճանչցուի, եւ կը սերին Աբրահամէն՝ Սառայիւ։[1] Իսկ միւսները կը վերաբերին կրտսեր ճիւղի մը, մայր ունենալով զՔետուր, զոր առաւ Աբրահամ կնութեան՝ Սառայի մահուանէն ետեւ։ Անցողակի նկատենք որ ըստ Մ. Խորենացւոյ՝ ինչպէս նաեւ ըստ Ս. Գրոց բնագրին՝ հոս խնդիրն օրինաւոր կնոջ վրայ է եւ ոչ թէ հարճի, ինչպիսի էր Հագար՝ մայրն Իսմայէլի եւ Արաբացւոց։

Այժմ տեսնենք թէ ինչպէս Մ. Խորենացի Պարթեւներն Աբրահամու սերնդոց մէջ դասելու ձեռնարկած է։ Ըստ իրեն՝ Արշակայ քաջին գահամբառնալն կատարումն է մարգարէութեան մը. Արշակ թագաւոր եղաւ “առ ի հաստատել բանին Տեառն առ Աբրահամ„ (Բ. գլ. ա։) Պէտք էր ուրեմն որ այս խօսքն առաւել կամ նուազ մեկին, առաւել կամ նուազ որոշ նշանակ մը պարունակէր Արշակայ կամ Պարթեւաց ինքնակալութեան վերաբերեալ։ Արդ՝ եթէ պատմագիրն ճշդութեամբ միայն ի մէջ բերէր Ս. Գրոց Ծնն. ԺԷ, 6 “Թագաւորք ի

[1] Ըստ Մ. Խորենացւոյ (Ա. գլ. ԻԲ.) Շամբաթ էր “մին ի գլխաւորաց Եբրայեցւոց գերելոց,„ եւ ըստ հետեւորդի՝ սերեալ Աբրահամէն եւ Սառայէն։ Յետագայ պատմիչք Աբրահամէն սերիլը յառաջ կը բերեն Դաւթայ արքայ-մարգարէին միջնորդութեամբ. Հմմտ. ի մէջ այլոց Մխիթար Անեցի (Հրտ. Պատկանեան. էջ 16.) “Զմի ի գլխաւորաց Եբրայեցւոց խնդրեալ ի Նաբուքոդոնոսորայ, զՇամբաթ՝ յազգէ Դաւթի մարգարէի։„

տէն եղիցին„ բնագիրը, ղուր պիտի փնտռէին ընթերցողք թէ ինչո՛վ է որ այս խօսքը հասրտարուած էր Արշակայ թագադրութեան ըլլալո՛ւն։ Ամէն մարդ գիտէր որ այս մարգարէութիւնն ինչպէս կատարուած էր, եւ թէ Արաբացւոց, Եդոմայ, Իսրայէլի եւ Յուդայի թագաւորք Աբրահամէն կը սերէին։ Իսկ եթէ Ս. Գրոց ժամանակներէն դուրս ելլել պէտք էր, այլ եւս պատճառ չկար աստուածաշունչ խօսքը միայն Արշակունեաց մերձեցընելու եւ ոչ նաեւ Սասանեանց կամ Կ. Պոլսոյ ինքնակալաց, միով բանիւ՝ աշխարհի ամէն թագաւորաց։

Ս. Գրոց բնագրին թեթեւ փոփոխութիւն մը, որուն մասերն ալ արդէն Ծննդոց գրոց միեւնոյն գլխէն առնուած էին, թոյլ կու տար որ Մ. Խորենացի մարգարէութեան շատ ընդարձակ ծաւալն աւելի սեղմէ եւ Պարթեւաց թագաւորաց մերձեցընէ՝ ամէն միւսներն ի բաց հանելով։ Համար 16ին մէջ Աստուած կ՚ըսէ Աբրահամու՝ Սառայի վրայ խօսելով. “Եւ եղիցի յազգս, եւ Թագաւորք ազգաց ի նմանէ եղիցին։„ Արդ համար 6ին մէջ “Թագաւորք„ բառը պէտք էր միայն 16 համարին համեմատ փոխել ընել “Թագաւորք ազգաց,„ եւ այն ատեն մարգարէական խօսքս հեղինակին ժամանակակցաց համար պայծառ ու յստակ կ՚ըլլար։

Արդեամբք ալ պարսիկ եւ արաբացի պատմագիրք Պարթեւաց պետութեան թագաւորները կը նշանակեն միշտ աս անուամբ ملوك الطوايف (Մու– լուք էթ–Թէվայէֆ), Թագաւորք ազգաց, փոքրաց կամ Հատուածեանց, “անուն մ՚որ շատ ճշգրիտ կերպով կը յայտարարէ նոյն ժամանակ Ասիոյ մէջ տիրող աւատական վարչութեան եղանակը, եւ Արշակունեաց միշտ նորոգուող կռիւները[1]։„ Տարակուսական չ՚երեւար որ այս անուանակոչութիւնն

---

[1] Սէն-Մարդէն, Հատակոտորք Արշակունեաց պատմութեան. Հատ. Բ, էջ 231։ — (Saint-Martin, Fragments d'une histoire des Arsacides, t. II, p. 231.)

արդէն կը գործածուէր Մ. Խորենացւոյ ժամանակ, եւ այն ատեն ամենեւին դժուարութիւն չի պատճառեր պատմագրին այն խօսքը, զոր այժմ իսկ կ'ուսումնասիրէինք. "Թագաւորք ազգաց է քէն ելցեն,, կարդալով՝ ընթերցողը կը հասկընար թէ "Թագաւորք Պարթեւաց ի քէն ելցեն,,[1] եւ այսպէս Արշակունեաց հարստութեան Աբրահամէն սերիլը հաստատուած կ'ըլլար Աստուածաշնչով:

Բաւական էր որ Աստուծոյ Աբրահամու տուած խոստումն այսպէս մեկնուէր, այն ատեն պէտք էր որ Պարթեւք սերէին Աբրահամէն միջնորդութեամբ Քետուրայ, վասն զի Սառայէն սերունդը վերապահուած էր Բագրատունեաց, իսկ ի Հագարէ սերուիլն՝ Արաբացւոց: Եմրանայ եւ իւր եղբարց "յերկիր Արեւելից,, խաւրուիլն ալ մարգարէութեան այսպէս մեկնեցուելուն աւելի եւս նեցուկ կ'ըլլար:

Այդ խօսքերս կնքելով՝ հարցում մը կ'ընենք որ Մ. Խորենացւոյ ժամանակին հետ կապ ունի: Ո՞ր ժամանակ Պարթեւաց թագաւորք կը նշանակուէին իբր "Թագաւորք ազգաց:,, Կը տրուէ՞ր արդեօք իրենց այս անունն Սասանեանց ժամանակ՝ թէ աւելի յետոյ Արաբացիներէն միայն: Այստեղ կը խոստովանիմ ոչ միայն իմ չգիտնալս, այլ եւ այս նկատմամբ անձեռնհաս ըլլալս: Պատմութեան կէտ մըն է այս, որ կարծեմ դեռ ամենեւին չէ լուսաւորուած, եւ կը համարձակիմ այս կէտին հրաւիրել այն գիտնոց ուշադրութիւնն՝ որոնք յատկապէս երանեան բանասիրութեամբ եւ պատմութեամբ կը զբաղին:

*Փարիս, 15 Փետրուար 1893:*

---

[1] Այս պատճառաւ ալ յօդուածիս սկիզբն այս խօսքը թարգմանեցինք "թագաւորքն ազգաց,, (les rois des nations) եւ ոչ թէ լոկ "թագաւորք ազգաց,, (d e s rois եւն:)

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

---

ԾԳ.

## ՆՈՐԱԳՈՅՆ ԱՂԲԵՐՔ

## ՄՈՎՍԻՍԻ ԽՈՐԵՆԱՑԻՈՅ





ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1894.

## ՆՈՐԱԳՈՅՆ ԱՂԲԵՐՔ

# ՄՈՎՍԻՍԻ ԽՈՐԵՆԱՑՒՈՅ

---

### ՔՆՆԱԴԱՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՔ

ԳՐԵՑ

**Ա. ԳԱՐԻԷՐ**

*Ուսուցչապետ յՈւսումնարանի Արեւելեան Կենդանի Լեզուաց, Օժանդակ-վարիչ Ուսումնարանի Բարձրագոյն Ուսմանց ի Փարիզ*

ՅԱՒԵԼՈՒԱԾ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1894.

# ԱԶԴ

Անցեալ տարի հրատարակած էինք հայագէտ Ա. Գարիէրի ուսումնասիրութիւնքն Մ. Խորենացւոյ նորագոյն աղբերաց[1], որոնք բոլորովին նոր լոյս սփռեցին խնդրոյս վրայ: Անկէ վերջը հայագէտը նորանոր եւ կարեւորագոյն գիւտեր ըրաւ՝ երկու ծանրակշիռ կէտ գտնելով, մին այն որ Խորենացի շատ յաճախ գործածած է զՄաղաղաս, եւ երկրորդ որ Խորենացւոյ քով կը գտնուի արձանագրութիւն մ՚որուն գտիչն է Պրոկոպիոս: Այսնորագոյն ուսումնասիրութիւնքն հրատարակուեցան այս օրերս առանձին գրքուկով իբրեւ Յաւելուած առաջին քննութեանց՝ գաղղիերէն լեզուաւ:[2] Այժմ ի լոյս կը հանենք այս Յաւելուածին հայերէն թարգմանութիւնն ալ, որով կ՚ամբողջանայ առաջին թարգմանութիւնը: Տետրակիս մասունքն՝ ինչպէս նախընթացինը, լոյս տեսած են մաս մաս "Հանդէս Ամսօրեայ„ ուսումնաթերթին մէջ:[3] Տետրակիս մէջ աւելցուած է միայն հեղինակին Յառաջաբանը:

Հ. Յ. Տ.

---

1 Նորագոյն Աղբերք Մովսէսի Խորենացւոյ. քննադատական ուսումնասիրութիւնք. գրեց Ա. Գարիէր, թարգմանութիւն: Վիեննա, տպ. Մխիթ. 1893. 8° Երես Ժ եւ 51:

2 A. Carrière, Nouvelles Sources de Moïse de Khoren etc. Supplément. Vienne, imprimerie des Méchitharistes 1894. 8° VIII pp. 40.

3 Հմմտ. Հանդէս 1893, թ. 10, էջ 309—311. 1894, թ. 2, էջ 53—67 եւ թ. 4, էջ 120—127:

Անցեալ տարի "Նորագոյն Աղքերք Մովսիսի Խորենացւոյ,, վերնագրին ներքեւ հրատարակուած մատենկան կցելով այս "Ցաւելուածն,, նորէն քննութեան չեմ առնուր արդէն պարզաբանուած իրերը: Ո՛չ թէ որովհետեւ կը կարծեմ թէ նիւթն սպառած է արդէն, քա՛ւ լիցի. բայց խնդիրն օգտիւ չի կրնար քննութեան առնուիլ կրկին անգամ, բայց միայն Սոկրատայ հայերէն թարգմանութեանց քննադատական ուսումնասիրութենէ մ՚ետքը. եւ այսպիսի ուսումնասիրութեան համար անհրաժեշտ է որ կանխաւ բնագիրք հրատարակուին: Սպասելով սոր՝ ուրիշ ուղղութեամբ մը կը փնտռենք Հայոց Պատմութեան քանի մ՚աղբիւրներ, որոնք ցայժմ մատնանիշ չեն եղած:

Ներկայ տետրակիս մէջ բովանդակուած գրութիւնքն ալ՝ ինչպէս նախընթացին մէջ՝ տարանջատ հատուածներ են,

իրարմէ անկախ գրուած՝ ըստ չափու որով իմ հետազօտութիւնքս արդիւնքի մը կ՚առաջնորդէին: Երբ Մաղաղասայ վրայ եղած յօդուածը կը գրէի, եւ ո՛չ կը կուահէի թէ անոր յաջորդէր պիտի ուրիշ մը Պրոկոպիոսի վրայ: Սակայն եւ այնպէս այս փոքրիկ աշխատասիրութիւնքն կը հրատարակեմ առանց բան մը փոխելու: Տատ զոհ եմ որ այս դրութեան հետեւեցայ անցեալ տարի, ուստի այսօր անկէ հրաժարելու յօժար չեմ:

Առ Հ. Ց. Տաշեան ուղղեալ նամակն՝ որ առաջին տեղը կը գրաւէ, ամէնէն յառաջ խոստովանութիւն մըն է մոլորութեան մ՚որով բաւական երկար ժամանակ սխալ հետոց եռեւէն գացի: Կը կարծէի թէ Մ. Խորենացւոյ մէջ գտած ըլլամ ստոյգ հետքեր անոր Զատկական Ժամանակագրութիւնը գործածած ըլլալուն: Խաբուած էի, եւ քիչ մնաց որ նշմարէի սխալանքն այն ատեն միայն, երբ աւ շատ ուշ էր: Բարեբախտաբար կրցայ ժամանակին հաստատել որ Զատկական Ժամանակագրութեան ամէն տեղերն, զորոնք համեմատած էի Հայոց Պատմութեան հետ, փոխառութիւնք էին ինքնին գլխովին Յով-

հանոնւՄաղաղասայ Ժամանակագրու-
թենէն, որ քանի մը տարի երիցագոյն է:
Ուստի վերջինս իբրեւ աղբիւր ծառայած
ըլլալու է Հայ պատմագրին: Իսկ այն պա-
րագայն որ երկու Ժամանակագրութեանց
մէջ կը վարանէի, ինչպէս նամակս կը
մատնէ, չունէր ամենեւին գոյութեան
պատճառ մը, եւ միայն կը ցուցընէ բիւ-
զանդական մատենագրութեան նիւթոց
մէջ իմ ունեցած դոյզն փորձառութիւնս:
Երկրորդ յօդուածին մէջ կրցայ Մա-
ղաղասայ տասնուվեց կտորները դէմ առ դէմ
դնել Մ. Խորենացւոյ Հայերէն բնագրին:
Համեմատութիւնն այնպիսի սերտ ազգա-
կցութիւն մը կը ցուցընէ, որ կը ստիպուինք՝
որչափ ինծ կ'երեւայ, սա երկակողմանի
հետեւութիւնն ընդունելու. Եթէ Մովսէս
Խորենացի չէ փոխառած Մաղաղա-
սէն, պէտք է որ Մաղաղաս ինքնին
օգտուած ըլլայ Հայոց Պատմութենէն: Եր-
կու լուծմանցս մէջ ընտրութիւն մ՚ընելը չի
կրնար տարակուսական ըլլալ եւ ոչ մէկու
մը համար: Իսկ անոնք որ չուզեն ընդունիլ
իմ եզրակացութիւնքս, կրնան տակաւին
երկու հեղինակաց հասարակաց աղբիւրի
մ՚ենթադրութեան ապաստանիլ: Կարծեմ

թէ ապացուցած եմ այս առարկութեան շատ անհաւանական ըլլալը: Մ. Խորենացւոյ եւ Պրոկոպիոսի վրայ եղած յօդուածն անոր ոչնչութիւնը պայծառ պիտի պարզէ, զոնէ ինչպէս կը յուսամ:

Այնտեղ խօսքը պարզապէս բառացի փոխառութեան մը վրայ չէ, այլ պատմութեան մ'այնպիսի իրողութեան որ իւր ժամանակակէտն ունի: Զ դարուն կէսերը Պրոկոպիոս պատմիչը խօսած է արձանագրական յիշատակարանի մը վրայ, որ կը վերաբերի հիւսիսային Ափրիկէի Քանանացւոց ծեռոք գաղթականութեամբ գրաւուելուն, եւ որ իւր ժամանակն ալ կար: Մովսէս Խորենացի ալ ի մէջ կը բերէ այս արձանագրութիւնը: Արդ ապացուցինք որ Պրոկոպիոս էր ճշմարիտ հեղինակն այս զիւտին, զոնէ առաջինն որ անոր վրայ խօսած է: Ուստի գրած է հայ պատմագրէն յառաջ, որուն պատմուածքն ալ ո՛չ թէ բուն իսկ Պրոկոպիոսէն կախումն ունի, այլ երկրորդ ծեռքի աղբիւրէ մը: Վ'ուզուի Մաղաքեայ կորուսեալ մէկ հատակտորը համարուի այն, ինչպէս ես կը կարծեմ, կամ նաեւ բոլորովին ուրիշ ժամանակագրի մը մէկ կտորը, հետեւութիւնը նոյն կը մնայ:

Ա՛յլ եւս իմ՛ ընդդիմաքանից համար պաշտպանութիւն մը չէ հաստարակաց աղբիւրի ենթադրութիւնն, վասն զի անհնար է որ եւէ դիպաց մէջ 550 տարիէն անդին անցնիլ, որ Վանդալաց Պատերազմի գրոց հրատարակութեան տարեթիւն է, իբր դար մ՛ետքն այն ժամանակէն, որուն մէջ կը դնէ աւանդական կարծիքն Հայոց Պատմութեան յօրինումն:

Համառօտ ըսելով՝ ցուցուցած ենք թէ Մ. Խորենացւոյ գրոց մէջ կան յիշատակարաններ Զ դարու վերջէն: Մեր ընթերցողք պիտի կարենան կշռադատել թէ այս Նորագոյն Աղբիւրք մինչեւ ո՛ր կէտ կրնան հաստատել մեր նախընթաց եզրակացութիւնքն, զոր հանած էինք հայ Սոկրատէն եղած փոխառութիւններէն:

Ա. Գ.

Փարիզ, 21 Մարտ 1894:

# ՆԱՄԱԿ ԱՌ Հ. Ց. Տ.

Պէտք չէի Մովսիսի Խորենացւոյ աղբերաց քննադատութեամբ նորէն զբաղիլ մինչեւ այն վայրկեան որ Սոկրատայ հայերէն թարգմանութեան արդէն յայտարարուած հրատարակութիւնն աչքիս առջեւ ունենայի։ Այս այսպէս միտքս դրած եւ արդէն տեսակ մ'ալ պարտաւորութիւն վրաս առած էի "Հանդէսի„ ընթերցողաց առջեւ[1]։ Կը սպասէի որ ընդդիմաբաններ ելլեն, եւ չէի ուզեր անոնց պատասխանել՝ բայց միայն այն ժամանակ, երբ լիակատար բնագիրները ձեռքս ունենայի։ Ընդդիմաբաններ եղան. շատ բան սորվեցուցին ատոնք ինծի, բայց չկրցան համոզել զիս՝ իմ հետեւութիւնքս կերպարանափոխ ընելու։ Պր. Մալխասեանց, Հ. Բարսեղ Վ. Սարգիսեան, Պր. Նորայր Բիւզանդացի եւն շուտով պիտի տեսնեն, գոնէ այսպէս կը յուսամ, թէ ինչպիսի խնամքով ուսումնասիրած եմ իրենց աշխատասիրութիւնները, եւ թէ ինչ պատճառներով իրենց հետ համաձայն չեմ։

Եթէ, ինչպէս կը կարծեմ միշտ, Հայոց Պատմութիւնը չէր կրնար յօրինուիլ Ը դարուն սկզբէն յառաջ, շատ նշանաւոր կերպով կ'ընդարձակի հեղինակին գործածած աղբիւրներուն քննութեան ազատ ասպարէզը։ Ես սկսայ մշակել զայն եւ ինծի կ'երեւայ թէ հունձքը շատ առատ եղաւ։

Արդիւնքն "Հանդէսի„ ընթերցողաց ալ հաղորդելու համար, Ձեզի ծանուցած եւ գրած էի հաստուած մ'այն փոխառութեանց վրայ, զոր Մ. Խորենացի ըրած է "Զատկական Ժամանակագրութենէն„, որ Հերակղիոսի (610—641) վերջին

---

[1] Հանդէս Ամս. 1893, էջ 1893, էջ 184 եւ Նորագոյն աղբիւր, էջ 41 եւն։

տարիներէն է[1]։ Ես չէի գտած անձամբ այս ի մէջ բերուած կտորները, վասն զի գրեթէ ամէնն ալ արդէն Վիստոն եղբարց հրատարակութեան (1736) մէջ նշանակուած են, բայց ճանչցած էի որ ասոնք են Հայ պատմագրին աղբիւրները։ Վերջին վայրկենիս, պարապոյ օրերու ուղեւորութեան մ'ելլելու ժամուն, տեսայ որ այս ամէն կտորները Յովհաննէս Մաղաղասի ժամանակագրութեան մէջ կը գտնուին, որ մինչեւ Յուստինիանոսի թագաւորութեան վերջը (565) կը հասնի, բայց թերեւս աւելի ուշ յօրինուած է[2]։

Այս երկու ժամանակագրութիւններուն որմէ՞ն օգտուած է Հայոց Պատմութեան հեղինակը։ Այս խնդրին պատասխանել կարելի չէ առանց նախապէս մանրախոյզ կերպով ուսումնասիրելու այս բնագիրներն, որուն զբաղելու այժմ ժամանակ չունիմ. եւ այսպիսի ուսումնասիրութիւն մ'անով աւելի դժուարին եղած է՝ որ Յովհաննու Մաղաղասի ժամանակագրութեան սկզբնական բնագիրը չունինք, այլ միայն մէկ համառօտութիւնը։ Հարեւանցի քննութենէ մ'ետքը միտեալ կ'ըլլամ կարծելու որ Մովսէս Խորենացի Մաղաղասի ժամանակագրութիւնը գործածած է, որուն մէջ կը գտնուին շատ մը կտորներ, զորոնք Հայ հեղինակն ի կիր արկած է, եւ որոնք կը պակսին Զատկական ժամանակագրութեան մէջ։

Ուստի հրաժարելով Ձեզի խաւրել այս վերջին ժամանակագրութեան վրայ իմ յայտարարած յօդուածս, զոր պէտք է այժմ նոր յօրինել ամբողջովին, կը շտապեմ Ձեր աչաց առջեւ դնել Մաղաղասի մէկ կտորն, որ կ'երեւայ թէ Հայոց Պատմութեան Գ գրոց ԺԲ գլխուն աղբիւրն եղած է՝ այն մասին համար, որ Կոստասայ թագաւորութեան

---

1 Քրումպախեր, Պատմութիւն Բիւզանդական մատենագրութեան, էջ 116։

2 Անդ, էջ 112։

վերջին տարիները, Պարսից դէմ պատերազմն եւ ինքնակալին ի Մոփսուեստիա մեռնիլը կը բովանդակէ: Շատ ժամանակ կայ որ ծանօթ էր թէ Մ. Խորենացւոյ պատմածն որչափ անբաւական է եւ անճիշդ, եւ դժուար էր ըմբռնել թէ ինչպէս հայ պատմագիր մ'այնպէս անորոշ բացատրութիւններ գործածել կրնար այնպիսի պատերազմ մը յիշատակելու՝ որ իրեն հայրենակցաց քով պէտք էր հռչակաւոր եղած ըլլալ Ամթայ առմամբ: Յաջորդ երկու հատակոտորներուն համեմատութիւնը կը յուսամ պիտի ցուցրնէ որ Մ. Խորենացի պարզապէս ընդօրինակած է յոյն հեղինակի մը շատ թերակատար տեղեկութիւնքը:

| Մ. Խորենացի. Գ, 12: | Մաղաղաս, էջ 325: |
| --- | --- |
| | Ἐπὶ δὲ τῆς αὐτοῦ (Κωνσταντίου) βασιλείας ἐκίνησαν οἱ Πέρσαι, ἤτοι Ἀββουραρσάκιος (Σαββουραρσάκιος) ὁ βασιλεύς. |
| Իսկ Կոստանդեայ արարեալ Կեսարզ Յուլիանոս, սպառազինեցաւ ընդդէմ Պարսից. | καὶ ἐπεστράτευσε κατ' αὐτῶν ποιήσας Καίσαρα Ἰουλιανὸν συγγενέα αὐτοῦ . . . |
| եւ տուեալ ճակատ, երկոքին կողմանքն պարտեցան. քանզի բազումք անկան յիւրաքանչիւրոց, եւ ոչ մի ի միւսոյ թիկունս դարձոյց, մինչեւ ի հաւանութիւն եկեալ, | καὶ κατελθὼν ἐπὶ τὰ Περσικὰ |
| արարին խաղաղութիւն ամս սակաւս: | ἐποίησε πάκτα εἰρήνης μετὰ Περσῶν ἐπὶ φανερὸν χρόνον, πολλῶν πεσόντων ἐξ ἀμφοτέρων ἐν τῇ συμβολῇ. |

Եւ ի Պարսից դարձեալ Կոստանդեայ, յերկար հիւանդացեալ վախճանեցաւ ի Մոմփսիւեստի քաղաքին Կիւլիկեցւոց։

Καὶ ὑποστρέψας . . . καὶ εἰσελθὼν ἐν Μαμψουεστίᾳ πόλει τῆς Κιλικίας, ἀρρωστήσας τελευτᾷ ἐκεῖ.[1]

Միտ դնելու է որ միայն Մ. Խորենացի եւ Յհ. Մաղաղաս կը յիշեն՝ որչափ ինծի ծանօթ է՝ Շապհոյ եւ Կոստասայ մէջ եղած խաղաղութիւն կամ զինադադար մը։ Ուրիշ որեւէ պատմագրաց մէջ չենք գտներ Մոպսուեստիայի՝ յիշատակութիւնն ալ, — որ անուան ուղղագրութեան կերպը միեւնոյն է երկու բնագրաց մէջ, — իբր տեղի մահուան Կոստասայ։ Վերն արդէն նշանակեցի որ Մաղաղասայ բնագիրը միայն համառօտութեամբ հասած է մեզի։

Արդէն կրնայի այժմէն իսկ Ձեզ նշանակել յոյն ժամանակագրիս շատ մը կտորներն, որոնք միեւնոյն կերպով կրնանք համեմատել հայ պատմագրին հետ։ Սակայն կարծեմ թէ լաւագոյն կ՚ըլլայ զասոնք ուրիշ աւելի մանրազնին ուսումնասիրութեան մ՚ընթացքին մէջ դնել։ Կը շատանամ ուրեմն մատնանիշ ընելով Ձեզ Մ. Խորենացւոյ հատակոտոր մը, որուն ծագումն մինչեւ ցայժմ ի զուր փնտռուած էի. այս կտորն է Թէոդոսի ձեռօք Թեսաղոնիկէի բնակչաց կոտորածին պատմութիւնը

---

1 «Ի ժամանակս սորա (Կոստանդեայ) խլրտեցան դրգռեցան Պարսիկք այսինքն արքայն Արքուրարշակ (Շապուհարշակ) եւ Կոստանդեայ արարեալ կեսար զՅուլիանոս զազգական իւր, սպառազինեցաւ ընդդէմ նոցա։ ...Եւ գնացեալ ի վերայ Պարսից արար խաղաղութիւն ժամանակս բազումս քանզի ի Ճակատու անդ բազումք անկան յիւրաքանչիւրոցն։ Եւ դարձեալ եւ մտեալ ի Մամփսուեստիա քաղաք Կիւլիկեցւոց՝ անդ հիւանդացեալ վախճանի։»

2 Ուստի սխալած էի կարծելով որ Մ. Խորենացւոյ «Մոմփսիւեստ» գրելը կրնայ Սոկրատայ յիշած «Մոպսուկրէնէ» ձեւին աղաւաղութիւնն ըլլալ, որ հայ թարգմանչին գործն ըլլայ. Նորագոյն ողբերգ. (էջ 42 ծան. 3։)

հմմտ. Մ. Խոր. Գ. լԹ. եւ Ց. Մաղաղաս, հրտ. ի Պոն, էջ 347։

Ծանօթ են ինծի այն ամէն առարկութիւնք, զոր կրնան ինծի ընել այսպիսի անճապարանօք գրուած տեղեկութիւնս կարդալէն ետքը։ Միայն կը խընդրեմ Ձեզմէ որ վերջնական դատաստան մը կտրելու համար՝ համիք սպասել մինչեւ որ հետազօտութեանցս արդիւնքը մանրամասն պարզեմ։ Իսկ այս տարանջատ հատակոտորս այժմէն Ձեզի խաւրելս եւ «Հանդէսի» մէջ ասպնջականութիւն շնորհելնիդ խնդրելս անոր համար է, վասն զի շատ կարեւոր պատճառներ ունիմ հայագիտաց մտադրութիւնն՝ որչափ կարելի է շուտով՝ հրաւիրելու Յովհ. Մաղաղասի ժամանակագրութեան վրայ։ Այլեւայլ նշաններ կը համոզեն. զիս կարծելու որ Հայոց Պատմութեան հեղինակն աչքին առջեւն հայերէն թարգմանութիւն մ՚ունէր, որ եղած էր տակաւին չհամառօտուած յոյն բնագրէ մը։ Արդեօք կա՞յ դեռ այժմ եւս այս թարգմանութիւնը։ Ո՞չ արդեօք թաղուած է Էջմիածնի կաթուղիկոսական մատենադարանի գանձերուն մէջ։ Կը խոստովանիմ որ տպուած երկասիրութեանց մէջ ամենեւին հետք մը չեմ գտած։

Այսպիսի թարգմանութեան մը գտնուիլն այնչափ կարեւորութիւն կրնայ ունենալ, որուն արժէքը չենք կրնար իբր չափազանց նկատել, նախ հայերէն մատենագրութեան եւ յետոյ նաեւ բիւզանդական ժամանակագրութեան[1] տեսակիտիւ։

Հաճեցէք ընդունել եւն։

Փարիզ, 11 Սեպտեմբեր 1893:

Ա. ԳԱՐԻԷՐ

[1] Քրոնոլոգիկէր, անդ։

## ՆՈՐԱԳՈՅՆ ԱՂԲԵՐՔ

# ՄՈՎՍԻՍԻ ԽՈՐԵՆԱՑԻՈՅ

### Ե.

### *Մովսէս Խորենացի եւ ժամանակագրութիւն Մաղաղեայ։*

*Պատմական քննադատութիւնը չէ ճշդրիտ գիտութիւն մ'այն իմաստով, որով կը նշանակենք ուսողութիւնն եւ երկրաչափութիւնը։ Չի յենուր որեւէ առածի մը վրայ, փորձառական եղանակաւ կը յառաջանայ եւ շատ անգամ ենթադրական հետեւութեանց կը հասնի։ Ստուգութեան աստիճանն՝ որուն հասնիլ կրնանք, ուսողական յայտյանդիմանութեան նկարագիրքն չունի ամենեւին. այսպէս իսկ կը պահանջէ այն նիւթոց բնութիւնը, որովք կը զբաղի քննադատական ուսումնասիրութիւնը։ Եւ այս է պատճառն որ պատմական ապացուցութեանց՝ ըստ երեւութին ամենէն հաստատունքն անգամ՝ միշտ ընդդիմաբանութեանց կը հանդիպին կամ գոնէ կրնան հանդիպիլ։ Առօրեայ փորձը կը հաստատէ զայս։*

*Հաստատեցինք իրողութիւն մը. բայց այս հաստատած իրողութեան արդիւնքն այն ըլլալու չէ որ պատմական նիւթոց մէջ սկեպտական ընէ զմեզ։ Արդեամբք ալ կրնանք հաստատել միւս կողմանէ ոչ նուազ ստուգութեամբ՝ որ պատմական ճշմարտութեան մերձենալէն չենք դադրիր, եւ այս՝ նախընթաց սերնդոց ամբարած աշխատութեամբքն, հետազօտութեան յօրինուածութեանց կատարելագործուելովն եւ այժմու գիտնական հետազօտութեան աւելի եւս խստանալովն։ Այս*

մտօք՝ յառաջադիմութիւնն այնպէս անուրանալի է որ ոչ ոք աստ վրայ կը տարակուսի։

Արդ ուրեմն՝ երբ յօրինուածաբար յառաջ տարուած ուսումնասիրութեանց շարք մը մեզի այնպիսի եզրակացութիւններ հանելու կ՚առաջնորդէ՝ որ հակառակ են յառաջագոյն ընդունուած գաղափարաց, պէտք է որ ընդդիմաբանութեան ակնկալենք։ Եւ այս բնական է։ Մանաւանդ թէ ցաւալի կ՚ըլլար եթէ այլազգ ըլլար. վասն զի ընդդիմաբանութեամբ յաճախ ի լոյս կը հանուին իրողութիւններ, որոնք անտես եղած էին. երբեմն ցուցման մը տկարութիւնն որոշակի կը ներկայացուի, եւ կը ստիպէ միշտ որ մանրախոյզ հետազօտողն այն եզրակացութիւնքն աւելի եւս ամրապնդէ։ Առ այս՝ ամենէն աւելի ազդուն կ՚ըլլայ՝ եթէ հակառակութեան նիւթ եղած խնդիրն ուրիշ մէկ կողմէն առնուիլ կարելի ըլլայ, ուրիշ ճամբայ մը մտնել եւ ցուցընել որ այն ալ միեւնոյն կէտին կը հասցընէ՝ որուն հասցուցած էր առաջին ճամբան։ Ասով, ինչպէս կը պատահի հաշուի մէջ, առաջին գործողութեան փորձն ըրած կ՚ըլլանք։

Այս կարգի փորձ մ՚այսօր ընել կ՚ուզեմ այն եզրակացութեանց համար, զորոնք հանած էի քննութեամբ Մ. Խորենացւոյ մէկ աղբեր, այն է հայերէն Սոկրատայ, որուն սկիզբը կը գտնուի Սեղբեստրոսի Վարքը։ Կարծեցի թէ իրաւունք ունէի հետեւեալ խորհրդածութիւնն ընելու. “Եթէ Հայոց Պատմութիւնը չի կրնար Ե դարուն՝ ինչպէս աւանդութիւնը կը պահանջէ՝ գրուած ըլլալ, այլ յայտնապէս Ը դարուն, ինչպէս կ՚երեւայ թէ իմ հետազօտութիւններէս կ՚եզրակացուի, զարմանալի կ՚ըլլար եթէ երկու միջանկեալ դարերը, այսինքն Զ եւ Է դարք, Մ. Խորենացւոյ ինչ ինչ աղբիւրներ մատակարարելու գործակցած չըլլային։ Արդ եթէ այս երկու դարուց պատմական գրակա-

նութիւնը կրկնելով բան մը չգտնեմ, իմ առաջին ապացուցութիւնս՝ թէեւ չտապալի, սակայն նաեւ իմ աչացս առջեւ կը կորսնցընէ այն յայտյանդի-մանութեան նկարագիրն՝ զոր իրեն կ'ընծայէի։ Ընդհակառակն եթէ կարենամ ցուցընել որ Հայ մատենագիրն աւելի կամ նուազ յաճախութեամբ գործածած է մէկ կամ շատ հեղինակներ Զ կամ Է դարու՝ որոնք բանակռուին մէջ տակաւին չեն յիշուած, ասով պայծառ կերպով կը հաստատուի իմ յառաջագոյն պաշտպանած խնդիրս։

Արդէն պատմած եմ առ Հ. Ց. Տ. գրած նամակի մը մէջ՝ թէ ինչպէս ի սկզբան կարծեցի թէ Զաքարիայի Ժամանակագրութեան մէջ գտած ըլլամ Մ. Խորենացւոյ աղբիւրներէն մին, եւ թէ ինչպէս տակաւ եկայ հասայ մինչեւ Յովհաննու Մաղաղաայ Ժամանակագրութեան (Զ դարուն վերջերը։) Ուստի աւելորդ է կրկնել հոս այն բաներն՝ որ Հանդիսի ընթերցողաց արդէն ծանօթ են։ Նմանապէս անյարմար է հոս ձեռնարկել Մաղաղաայ Ժամանակագրութեան ճշգրտագոյն թուականին վրայ խնդիր յուզելու, որ այժմու բնագրին համեմատ՝ կը հասնի կը մնայ Յուստինիանու 37րորդ տարին (563). բայց որովհետեւ այս գործքը մեզի հասցընող միմիայն ձեռագիրը պակասաւոր է ի վերջոյ, կարելի եղած է ընդունիլ որ հեղինակն իւր երկասիրութիւնը շարունակած էր մինչեւ Հերակլեայ գահակալութիւնը (610.)[2] մեր գիտած նպատակին համար կը բաւէ գիտնալը որ գործքն Զ դարուն վերջին երրորդ մասէն յառաջ գրուած չի կրնար ըլլալ։ Իսկ իւր պատմական արժէքին ինչ ըլլալը դիւրաւ պիտի իմացուի այն սխալներովն, զորոնք գործել տուած է Մ. Խորենացւոյ։ Մաղաղաայ գրքին բազմաթիւ թերութիւնքն արդէլք

1 Տես վերը՝ էջ 1։

2 Տես Քրումպախէր, Պատմութիւն բիւզանդական մատենագրութեան, էջ 112 եւն։

չեղան որ ժողովրդական ըլլար, եւ իրմէ ետքն եկող եւ իրեն նմանող ժամանակագիրներու մեծագոյն մասին աղբիւրն ըլլար։ Ուստի քանի կ'երթայ՝ կը հաստատուինք այն կարծեաց վրայ թէ այս գրքին Հայերէն թարգմանութիւնն ալ կար, եւ թէ Հայոց Պատմութեան հեղինակն այն թարգմանութենէն միայն գիտէ զՄաղաղաս։

Այն համեմատութիւնք, զոր պիտի ընենք Մ. Խորենացւոյ եւ Մաղաղասայ բնագրաց մէջ,[1] ամէնն ալ հաւասարապէս ապացուցիչ չեն։ Ոմանց, թէեւ ի հարկէ սակաւուց թուով, նմանութիւնը՝ խստիւ խօսելով՝ կրնայ ուրիշ կերպով ալ մեկնուիլ, եւ ոչ միայն կախման աղերսիւ։ Ուստի նախ մտածեր էինք որ ամէնէն յառաջ դնենք այն կոչմունքն որ ամէնէն աւելի որոշիչ են, որոնք ամէնէն աւելի յայտնի կերպով կը ցուցընեն թէ հայն մերթ համառօտութիւն եւ մերթ բառական թարգմանութիւն է յունին։ Երբ այսպէս միանգամ այլեւս տարակուսի տակ չմնայ փոխառեալ ըլլալը, կրնայինք դնել այն կտորներն ալ, որ այնչափ առանձնայատուկ չեն, եւ այսպէս՝ նախընթաց ապացուցումն օգտիւ գործածել վերջնոցս համար։ Այսպէս վարուիլն շատ օրինաւոր էր, եւ սակայն հրաժարեցանք անկէ։ Մեզի այնպէս երեւցաւ որ հետեւելով գլուխ առ գլուխ նոյն իսկ Մ. Խորենացւոյ կարգին, բոլորովին զերծ կ'ըլլանք այն ամբաստանութենէն թէ արուեստակեալ կերպով կարգաւորած եւ ներկայացուցած ըլլանք իրողութիւններն, որպէս զի մեր եզրակացութեանց աւելի նպաստաւոր ըլլան։ Ուստի ընթերցողին կը մնայ դատաստան ընել անձամբ՝ ուսումնասիրելով մի առ մի վեշտասան հատակտորքն, զորոնք կը պարունակէ Հայոց Պատմութեան՝ Մաղաղասայ ժամանակագրութեան հետ մեր ըրած համեմա-

---

1 Մաղաղասայ գրքէն կոչում կ'ընենք ըստ Հրատարակութեան Պոննի քաղաքի, 1831ին։

տութիւնը։ Պիտի կշռադատէ բնագիրքը, համեմատութեանց արժէքն որոշէ, եւ այսպէս կարող պիտի ըլլայ ինքնին հանել այն հետեւութիւնքը, որոնք կը կարծէ թէ կ՚ելլեն իւր քննութենէն։

Յաջորդովն մեր կոչումն ընելու կտորներէն շատերն այնպէս են՝ որ շատ երկայն մեկնաբանութեանց առիթ կրնան տալ։ Բայց որովհետեւ մենք կ՚ուզենք միայն Մ. Խորենացւոյ աղբերքն հետազօտելով շատանալ, եւ ոչ թէ գիտնական հրատարակութեան մը համար ծանօթութիւններ գրել, միայն այնպիսի դիտողութիւններ ըրինք որոնք անհրաժեշտ հարկաւոր են երկու բնագիրները համկընալու եւ համեմատելու համար։

## Ա.

| Մ. Խորենացի Բ, 13. | Մաղաղաս, էջ 155—156: |
|---|---|
| Կրիւսոս անցեալ ընդ Ալիւս գետ քակեսցէ զիշխանութիւնս։ | Κροῖσος Ἅλυν ποταμὸν διαβὰς μεγάλην ἀρχὴν καταλύσει.[1] |

Հերոդոտ այս երկդիմի պատգամին վրայ կը խօսի, բայց անոր բնագիրը չի յիշեր։[2] Արիստոտէլ[3] աւանդած է մեզ Պիւթեան հարցուկին արտասանած տողը.

“Կրէսոս անցեալ ընդ Ալիս գետ քակեսցէ իշխանութիւն մեծ։„ Մաղաղաս, որ շատ քիչ գրագէտ է, ոտանաւոր տողս այլակերպած է եւ չափն աղարտած՝ ընդմիջարկելով ποταμὸν բառը, որ Մ. Խորենացւոյ քով հայերէն գետ թարգմանուած է։

---

1 “Կրիւսոս անցեալ ընդ Հալիւս գետ քակեսցէ իշխանութիւն մեծ։„

2 Հերոդ. Ա, 53։

3 Հռետոր. Գ, 5։

Բ.

| Մ. Խոր. Բ, 76. | Մաղաղաս, էջ 301—302: |
| --- | --- |
| | Ἐπὶ δὲ τῆς βασιλείας |
| ... Տակիտոս | τοῦ αὐτοῦ Ταχίτου |
| ընդդէմ Արտաշրի [1] | |
| գայ զկողմամբք Պոնտոսի | ἐγένετο πόλεμος ἐν τῇ Ποντικῇ |
| | καὶ κατῆλθεν ὁ αὐτὸς βασιλεὺς πολεμῶν, |
| ... որ եւ սպանաւ ի յիւ- րոցն | καὶ ἐσφάγη |
| ի Ճանիւս պոնտացւոց որ էն խաղտիք. նոյնպէս եւ եղբայր նորա | ἐν Ζταννιχῇ [2] τῆς Πόν- του ... |
| Փղոռիանոս ... | Φλωριανός ... ἐπε- στράτευσεκατὰΠερσῶν, καὶ ὡς κατέρχεται |
| ի Տարսոն: | ἐν Ταρσῷ, ἐσφάγη ὑπὸ τῶν ἰδίων...[3] |

Հին հեղինակք շատ անմիաբան են տեղւոյն նկատմամբ ուր ինքնակալն Տակիտոս հիւանդութեամբ մեռաւ կամ սպանուեցաւ իւր զօրքէն (276:) Զոսիմոս կ'ըսէ թէ յԵւրոպա մեռաւ. Աւրելիոս Վիկտոր (“Համառօտութիւն„) ի Տարսոն Կիլիկեցւոց. նոյն Վիկտոր (“Վասն կեսարաց„)՝ ի Տիւանէս Կապպադովկացւոց: Միայն Մաղաղաս եւ

---

1 Անցողակի յիշենք որ Արտաշիր († 241) արդէն 34 տարի յառաջ մեռած էր, երբ Տակիտոս ինքնակալութեան ծիրանին զգեցաւ (276:)

2 Ուղղելու է ի Τζαννιχῇ; հմմտ. οἱ Τζάννοι առ Մաղաղ., էջ 347, տող 8, եւ Τζανιχή առ Պրոկոպ., Վասն պարսկ. պատերազմին, Բ, 29:

3 “Առ թագաւորութեամբն նորին Տակիտոսի եղեւ պատերազմ ի կողմանս Պոնտոսի, եւ գնաց թագաւորն պատերազմել եւ սպանաւ ի Ճանիւս Պոնտացւոց . . . Փղորիանոս չոգաւ պատերազմաւ ընդդէմ Պարսից, եւ իբրեւ եկն ի Տարսոն, սպանաւ յիւրոցն: . . .„

Մ. Խորենացի են, որ այս դէպքն եղած կը պատմեն ի Ճանէս, զոր Հայք Խաղտիք կը կոչէին։[1]

Գ.

| Մ. Խոր. Բ, 79. | Մաղաղաս, էջ 302: |
| --- | --- |
| | Ὁ δὲ αὐτὸς βασιλεὺς Πρόβυς ἐπολέμησε τοῖς Γότθοις ἐν τῷ Σιρμίῳ. |
| Եւ ի պատերազմելն Պռոբոսայ ընդ Գութս, | καὶ ἐν τῷ πολεμεῖν αὐτὸν |
| եղեւ սով սաստիկ. | ἐγένετο λιμὸς κοσμικὸς μέγας, |
| եւ յոչ գտելոց շտեմարանաց՝ | καὶ μὴ εὑρεθέντων ἀναλωμάτων |
| յարեան զօրքն ի վերայ | ἐστασίασεν ὁ στρατός. |
| եւ սպանին զնա։ | καὶ ἐπελθόντες ἔσφαξαν αὐτὸν ἐν τῷ Σιρμίῳ...[2] |

Երկու բնագրաց նմանութիւնն աւելի ակներեւ կ'երեւայ, եթէ գիտցուի որ դարձեալ միայն Մաղաղաս եւ Խորենացի են որ Պրոբոսի զօրաց ապստամբութեան պատճառ սովը կը դնեն։

Դ.

| Մ. Խոր. Բ, 83. | Մաղաղաս, էջ 316—317: |
| --- | --- |
| ... զոր արարեալ սիւգնոյն | ...ἐποίησε σίγνον σταυροῦ, |
| | ὡς εἶδεν ἐν τῷ οὐρανῷ, |
| եւ առաջաբերեալ, | καὶ προηγεῖτο αὐτοῦ... |
| յաղթեաց պատերազմացն։ | ἐνίκησε τὸν πόλεμον κατὰ κράτος.[3] |

---

1 Հմմտ. Մ. Խոր. Աշխ. Հրտ. Պատկ. էջ 16։ Ճանիք, որք են Խաղտիք։ Սէն-Մարթէն պահած է Ճանէ-ընթերցուածը փոխանակ Ճանիքի (ՏԵԿՊՓ)։

2 «Իսկ թագաւորն Պրոբոս պատերազմեցաւ ընդդէմ Գոթթաց ի Սիրմիոն. Եւ ի պատերազմելն նորա եղեւ սով մեծ աշխարհի. եւ իբրեւ ոչ գտան ծախք պարէնի ապստամբեաց զօրն. եւ յարուցեալ սպանին զնա ի Սիրմիոն։»

3 «...Արար սիւգնոն խաչի, որպէս եւտես յերկինս,

Կ'երեւայ թէ հոս Մաղաղաս համառօտած է այնպիսի աղբիւր մը, որ շատ մեծ նմանութիւն ունի այն ընդմիջարկութեան հետ, զոր մատնանիշ ըրած ենք Սեղբեստրոսի Վարուց հայերէն թարգմանութեան մէջ։[1] Երկու բնագրացս մէջ ալ σίγνον[2] (սիգնոյն, signum) բառին գործածութիւնը չի կրնար մեկնուիլ պարզ զուգադիպութեամբ մը։

Ե.

| Մ. Խոր. Բ, 87. | Մաղաղաս, էջ 319: |
| --- | --- |
| Զոր արարեալ Կոստանդիանոսի, յետ այսորիկ | Ὁ δὲ βασιλεὺς Κωνσταντῖνος |
| առաքեաց | ἔπεμψε |
| զՀեղինէ զմայր իւր | τὴν ἑαυτοῦ μητέρα τὴν χύραν Ἑλένην |
| յԵրուսաղէմ ի խնդիր | εἰς Ἱεροσόλυμα εἰς ἀναζήτησιν |
| պատուական խաչին, | τοῦ τιμίου σταυροῦ· |
| զոր եւ եգիտ իսկ | ἥτις καὶ εὑροῦσα ἀνήγαγε |
| զփրկական փայտն, | τὸν αὐτὸν τίμιον σταυρὸν |
| հանդերձ հինգ բեւեռօքն։ | μετὰ τῶν πέντε ἥλων.[3] |

Հայերէնն ակնյայտնի կերպով թարգմանուած է յունարէնէ, եւ առաջնոյն երկրորդէն կախումն ունենալն աւելի եւս որոշ կը տեսնուի նաեւ անկէ որ յիշեալ տեղւոյն հայերէնին անմիջապէս նախընթաց խօսքը կը համապատասխանէ՝

---

եւ յառաջ մատուցեալ զնա . . . յաղթեաց պատերազմին զօրութեամբ։„

1 Ջորաքոյն Ադբէրտ, էջ 13 եւն։

2 Մաղաղաս եօթն անգամ կը գործածէ այս բառն զինանշանի իմաստով։

3 «Իսկ թագաւորն Կոստանդիանոս առաքեաց զմայր իւր զտիկին Հեղինէ յԵրուսաղէմ ի խնդիր պատուական խաչին. որ եւ գտեալ եբեր զպատուական խաչն հանդերձ հինգ բեւեռօքն։»

եթէ ոչ ըստ ձեւին գոնէ ըստ իմաստին՝ Մաղաղայ քանի մը տող յառաջ տուած մէկ անճիշդ-նախադասութեան (էջ 317)։

| | |
|---|---|
| Քանզի Շապուհ աղաչեաց զԿոստանդիանոս զյաղթողն, խնդրել հաշտութիւն, եւ հաստատել խաղաղութիւն մշտնջենաւոր. (զոր արարեալ եւն։) | Καὶ ἐπεστράτευσε κατὰ Περσῶν καὶ ἐνίκησε καὶ ἐποίησε πάκτα εἰρήνης μετὰ Σαραβάρου[1], βασιλέως Περσῶν, τοῦ Πέρσου αἰτήσαντος εἰρήνην ἔχειν μετὰ Ῥωμαίων.[2] |

Եւ ո՛չ մէկ պատմագիր կ'ընդունի թէ Կոստանդիանու եւ Շապհոյ մէջ խաղաղութեան դաշինք դրուած ըլլայ, եւս առաւել ո՛չ՝ թէ Պարսից արքային խնդրած ըլլայ զայն։ Միայն Եւսեբեայ Կոստանդիանոսի վարքը կ'աւանդէ զայս,[3] զոր Մ. Խորենացի չէ ճանչցած, բայց որ կրնայ Մաղաղասայ աղբիւրն եղած ըլլալ։

Զ.

| Մ. Խոր. Բ, 88. | Մաղաղաս, էջ 292: |
|---|---|
| | Καὶ τὸ δὲ λεγόμενον Στρατήγιον ἀνενέωσεν ὁ αὐτὸς Σέβηρος· |
| ...... որպէս տիեզերակալին | πρῴην γὰρ ἦν κτισθὲν ὑπὸ |
| Աղեքսանդրի Մակեդոնացւոյ, | Ἀλεξάνδρου τοῦ Μακεδόνος, |
| յորժամ անտի ընդդէմ Դարեհի | ὅτε κατὰ Δαρείου |
| սպառազինեցաւ, եւ սակս | ἐπεστράτευσεν, ὃς καὶ |

1 Կարդալու է Σαπώρου.

2 "Եւ պատերազմեցաւ ընդդէմ Պարսից եւ յաղթեաց եւ արար դաշինս խաղաղութեան ընդ Շապհոյ արքային Պարսից, խնդրելով Պարսկին խաղաղութիւն ունել ընդ Հռոմայեցիս։„

3. Գ, 57։

| | |
|---|---|
| այնորիկ շինեաց յիշատակ իւր | |
| զաստացեալն Ստրատիգին. | ἐκάλεσε τὸν τόπον Στρατήγιον·[1] |
| քանզի ի նմա զպատերազմականս յօրինեաց զկազմութիւն ։ | ἐκεῖ γὰρ στρατηγήσας τὰ τοῦ πολέμου ὥρμησεν εἰς τὸ πέραν κατὰ Περσῶν.[2] |
| Զոր յետոյ Սեւերիոս արքայ Հռովմայեցւոց նորոգեաց ։ | |

Է.

| Մ. Խոր. Բ, 88. | Մաղաղաս, էջ 291: |
|---|---|
| ...եւ ինքն շինեաց զբաղանիսն | ...καὶ ἔκτισε δημόσιον λουτρὸν τὸ λεγόμενον Ζεύξιππον, διότι ἐκεῖ ἵστατο ἐν μέσῳ τοῦ τετραστῴου |
| ի տեղւոջ սեանն | στήλη χαλκῆ τοῦ Ἡλίου, |
| որ ունէր ստորագիր | καὶ ὑποκάτω αὐτῆς ἔγραφε |
| խորհրդական անունն Արեգական , | τὸ μυστικὸν ὄνομα τοῦ ἡλίου, |
| ըստ Թրակացւոց բառի Զեւքսիպոն , | Ζευξίππῳ Θεῷ· οἱ δὲ Θρᾷκες οὕτως ἔλεγον τὸν ἥλιον. Οἱ δὲ τῆς πόλεως Βύζης οὕτως |

---

1 Զատկական ժամանակագրութեանն (էջ 265 դ), որուն աղբիւրն է հոս Մաղաղաս, Στρατῆγιν (Ստրատէգին) կ'ընթեռնու, որ կրնայ բուն հնագոյն ընթերցուածն ըլլալ։

2 "Եւ զաստացեալն Ստրատեգիոն նորոգեաց ինքն Սեւերոս. քանզի կանխաւ շինեալ էր, յԱղեքսանդրէ Մակեդոնացւոյ, յորժամ ընդդէմ Դարեհի պատրաստեցաւ, վասն այնորիկ կոչեաց զտեղին Ստրատեգիոն. քանզի անդ յօրինեալ զպատերազմական կազմութիւն՝ անց յայնկոյս ընդդէմ Պարսից։ .

| | |
|---|---|
| որոյ կոչմամբ յորջորջեցան եւ բաղանիքն։ | ὠνόμαζον τὸ αὐτὸ δημόσιον [λουτρὸν][1] Ζεύξιππον κατὰ τὸ ὄνομα ὅπερ εἶχε τὸ πρότερον ὁ τόπος.[2] |

Ը.

| Մ. Խոր, Բ, 88. | Մաղաղաս, էջ 292: |
|---|---|
| Նա շինեաց եւ | ... Καὶ κτίσας ὁ αὐτὸς βασιλεὺς καὶ κατεναντι τοῦ ἱεροῦ τῆς Ἀρτέμιδος |
| զանտառանն եւ զգազանամարտկացն | κυνήγιον μέγα πάνυ, καὶ κατέναντι τοῦ ἱεροῦ τῆς Ἀφροδίτης |
| եւ զխաղալկացն, եւ զձիընթացսն ոչ կատարմամբ։ | Θέατρον· τὸ δὲ Ἱππικὸν ἔστησεν ... ὅπερ οὐκ ἔφθασε πληρῶσαι.[3] |

Թ.

| Մ. Խոր. Բ. 88. | Մաղաղաս, էջ 320: |
|---|---|
| Ասեն եւ զայս, եթէ | Ὁ δὲ αὐτὸς Κωνσταντῖνος |
| գաղտնի եհան ի Հռովմայ | ἀφελόμενος ἀπὸ Ῥώμης κρύφα |

---

1 Այս բառն գրած ենք բնագրին մէջ՝ ըստ Ջարկ. Ճոմանոյսկիբրաունեան։

2 «... Եւ շինեաց զհասարակաց բաղանիս զառաջեալն Զեւքսիպպոս, քանզի անդ կանգնեալ էր ի միջի չորեքսրահին սիւն պղնձի Արեգական, եւ ի ներքոյ գրեալ զխորհրդական անունն Արեգական՝ Զեւքսիպպեայ գից. զի Թրակացիք այսպէս կոչեն զարեգակն։ Իսկ բնակիչք քաղաքին Բիւզայ այնպէս յորջորջեցին զհասարակաց (բաղանիսն) Զեւքսիպպոս՝ ըստ անուանն զոր ունէր տեղին յառաջագոյն։»

3 «... Եւ շինեաց Թագաւորն եւ յանդիման մեհենին Արտեմեայ զորսարանն մեծ յոյժ, եւ առաջի մեհենին Ափրոդիտեայ զԹէատրոնն. իսկ զձիընթացսն կանգնեաց ... զոր ոչ ժամանեաց կատարել։»

| | |
|---|---|
| զաստացեալն Պաղադիոն | τὸ λεγόμενον Παλλάδιον |
| քերածոյ, եւ եդ զնա ի | ξόανον,[1] ἔθηκεν αὐτὸ εἰς |
| | τὸν ὑπ' αὐτοῦ κτισθέντα |
| Փորոնին | Φόρον |
| ներքոյ սեանն | ὑποκάτω τοῦ κίονος τῆς στήλης |
| զառ ի յիւրմէ կանգնեալ։, | αὐτοῦ, |
| | ὥς τινες λέγουσι τῶν Βυζαντίων ὅτι ἐκεῖ κεῖται[2] |

Այս Զ, Է, Ը եւ Թ հատուածոց մէջ ի վկայութիւն բերուած կտորները Մ. Խորենացւոյ գրոց մէկ գլխուն կը վերաբերին, եւ Բ, 88 գլխուն գրեթէ ամբողջ երկրորդ մասն են։[3] Զատոնք յառաջ բերի այն կարգաւ, զոր կը ցուցընէ հայերէն բնագիրն, եւ միայն անոր համար այլեւայլ մասերու բաժնեցի, որովհետեւ Մաղաղասայ այլեւայլ տեղերուն կը համապատասխանեն։ Պէտք չկայ պնդելու այս կողմանց նմանութեան՝ կրնամ ըսել՝ նոյնութեան վրայ։ Կը շատանանք ընթերցողին մտադրութիւնը հրաւիրելով այն իրողութեան վրայ թէ այս հատակտորոց մէջ աւանդուած գրեթէ ամէն մանրամասնութիւնք այլուր ամենեւին չեն գտնուիր, բայց միայն Մաղաղասայ եւ Մ.

---

1 Ξόανον (արձան՝ փայտեայ) կ'ածանցի ξέω (քերել՝ յղկել) բառէն, ինչպէս քերածոյ կ'ածանցի քերել բառէն. որ ξέωին հետ նոյն նշանակութիւնն ունի։

2 «Իսկ Կոստանդիանոս գաղտ հանեալ ի Հռովմայ զաստացեալն Պաղղադիոն քերածոյ, դնէ զնա ի Փորոսին՝ զոր իւր իսկ շինեալ էր, ի ներքոյ սեան արձանին իւրոյ, զորմէ ասեն ոմանք ի Բիւզանդացւոց եթէ կայ անդ։»

3 Անօգուտ չըլլար մեր այս համեմատած բնագիրքը՝ դէմ առ դէմ դնել այն համեմատութեանց հետ, զոր միեւնոյն էջին նկատմամբ ըրած է — բայց ոչ առանց հեգնութեան խայթի մը — գիտնականն Հ. Բարսեղ Սարգիսեան, Ցեսութիւն Սեղբեստրոսի Պատմութեան եւ Մ. Խորենացւոյ աղբերաց։ Վենետիկ 1893, էջ Լ եւ ԼԱ։

Խորենացւոյ քով: Զարչական ժամանակագրութիւնն. գրեթէ բառ առ բառ օրինակած է Մաղաղաայ բնագիրը:

## Ժ.

Մ. Խոր. Գ, 12. Մաղաղաս, էջ 325—326:

Չեմ հոս ի մէջ բերեր այն բնագիրքն, որ Կոստանդեայ ինքնակալի մահուան վրայ կը խօսին, որոնք արդէն հրատարակուած են վերնագոյն՝ էջ 3:

## ԺԱ.

| Մ. Խոր. Գ, 21. | Մաղաղաս, էջ 339 եւն: |
| --- | --- |
| Սաստիկ եւ յոյժ ահաւոր էր ի վերայ անիրաւաց Վաղենտիանոս. որով եւ զբազում իշխանս վասն յափշտակութեան սատակեաց, | Ὁ δὲ θειότατος βασιλεὺς Βαλεντινιανὸς πολλοὺς συγκλητικοὺς καὶ ἄρχοντας ἐπαρχιῶν ἐφόνευσεν, ὡς ἀδικοῦντας καὶ κλέπτοντας καὶ ἁρπάζοντας. Τὸν δὲ πραιπόσιτον τοῦ παλατίου |
| եւ զՌոդանոս ոմն | αὐτοῦ ὀνόματι Ῥοδανόν, ἄνδρα δυνατώτατον καὶ εὔπορον καὶ διοικοῦντα τὸ παλάτιον |
| ներքինապետ | ὡς πρῶτον ὄντα ἀρχιευνοῦχον καὶ ἐν μεγάλῃ τιμῇ ὄντα, |
| այրեաց կենդանւոյն. | ζῶντα ἔχαυσεν . . . |
| քանզի երիցս հրամայեաց, եւ ոչ դարձոյց զյափշտակութիւն | ὁ γὰρ πραιπόσιτος αὐτοῦ Ῥοδανὸς ἥρπασεν |
| ընչից կնոջ միոյ այրւոյ: | οὐσίαν ἀπό τινος χήρας γυναικὸς κ. τ. λ.[1] |

---

1 "Իսկ աստուածաքանչ Թագաւորն Վաղենտինիանոս բազում սինկղիտիկոսս եւ իշխանս գաւառաց սատա-

Յունարէն բնագիրը կը շարունակուի՝ պատմելով Վաղենտինիանոս այլեւայլ ջանքերն որ Հռոդանոս անիրաւութեամբ յափշտակած ստացուածքներն ետ դարձընէ. զնոյն կը բացատրէ հայն ալ շատ հակիրճ խօսքերով. "Երէցս Հռոմայեցւոց, եւ ոչ Գոթացւոց . . . :„ Մաղաղաս աղբիւր եղած է ուրիշ բիւզանդեան ժամանակագրաց (Զատկ. Ժամանակագր., Կեդրենոս եւն.), որոնք ներքինապետին Հռոդանոսի արկածքը կը պատմեն: Հնագոյն պատմիչք այսպիսի բան չեն գիտեր:

ԺԲ.

| Մ. Խոր. Գ, 29. | Մաղաղաս, էջ 341—342: |
| --- | --- |
| . . . Հիւանդացեալ Վաղենտինիանոս | . . . Βαλεντινιανὸς νόσῳ βληθεὶς μετὰ χρόνον ἐτελεύτα |
| ի բերդին որ կոչի Բերգիտիոն վճարի ՚ի կենցաղոյս, | ἐν χαστελλίῳ Βιργιτιώνᾳ[1] . . . |
| եղբօրն փոխանորդելով զտէրութիւնն: | Καὶ ἐβασίλευσε ὁ θειότατος Βάλης ὁ ἀδελφὸς Βαλεντινιανοῦ . . . Ὅτε γὰρ ἐτελεύτα Βαλεντινιανὸς ὁ αὐτοῦ ἀδελφός, οὐχ ἦν ἐν Κωνσταντινουπόλει ὁ Βάλης, ἀλλ'ἦν πέμψας αὐτὸν ὁ ἀδελφὸς αὐτοῦ |
| Յետ բարեբախտագոյն | ἐν τῇ ζωῇ αὐτοῦ πολεμῆσαι |

կեաց, իբրու անիրաւեալս եւ գողացեալս եւ յափշտակեալս. իսկ զվերակացու պաղատանն իւրոյ Հռոդանոս անուն, զայր հզօր յոյժ եւ մեծատուն եւ մատակարար պաղատան՝ քանզի առաջին ներքինապետ էր եւ ի մեծի պատուի, այրեաց կենդանւոյն . . . քանզի վերակացու իւր Հռոդանոս յափըշտակեաց ինչս ի կնոջէ միոյ այրւոյ:„

1 Սոկրատ. Դ, 30. «Յամրոցին որ կոչի Բերգիտիոն:»

| | |
|---|---|
| Վաղեսի պատերազմաւ | εἰς τὸ Σίρμιον πρὸς |
| Գթացն յաղթութեամբ | τοὺς Γότθους· οὕστινας |
| | νικήσας κατὰ κράτος |
| դարձի . . . | ὑπέστρεψε . . .[1] |

Բնագիրքս համեմատելով՝ ինքնին երկու դիտողութիւնք կը ծագին ։

1. Թէ Մ. Խորենացի եւ թէ Ց. Մաղաղաս կը գործեն հոս ի միասին մեծ պատմական սխալ մը՝ զՎաղէս յաջորդ դնելով Վաղենտինիանու ։ Վաղէս արդէն տասուերկու տարի կառավարած էր, երբ մեռաւ իւր եղբայրը (375 ։) Երկուքն ալ արդեամբք միեւնոյն տարին (364) ինքնակալ անուանուած էին եւ պետութիւնը մէջերնին բաժնեցին այնպէս՝ որ Վաղենտինիանոս արեւմտեան գաւառաց կ'իշխէր եւ Վաղէս արեւելեան գաւառաց ։ Այս վայրկենէս սկսեալ "անդառնալի կերպով երկուքի բաժնուեցաւ պետութիւնը, վասն զի Թէոդոսի ձեռօք նորոգուած միութիւնը քանի մ'ամիս միայն տեւեց ։"[2] Ուստի Վաղէս Վաղենտինիանու յաջորդութիւնն առած երբեք չէր կրնար ըլլալ, այն որ առիթ եղաւ Արեւմտից պետութեան բաժնուելուն անոր երկու որդւոց մէջ՝ Գրատիանու եւ Վաղենտինիանու Բ ։ Ուստի յոյն ժամանակագիրն եւ հայ պատմագիրն իրական պատմութեան բոլորովին հակառակ են ։[3]

2. Երկու բնագիրքն՝ հայն եւ յոյնն՝ ի մերձուստ քննելով՝ կը տեսնուի որ առաջինն երկրորդին

---

1 "... Վաղենտինիանոս անկեալ յախտ՝ յետ ժամանակի վախճանի ի բերդին Բիրգիտինոն ։ Եւ թագաւորեաց աստուածաքանչն Վաղէս՝ եղբայր Վաղենտինիանու . . . ։ Քանզի իբրեւ մեռաւ Վաղենտինիանոս եղբայր նորա, Վաղէս չէր ի Կոստանդնուպոլիս, այլ առաքեալ էր զնա եղբօր նորա՝ մինչդեռ կենդանի էր, ի Սիրմիոն պատերազմել ընդդէմ Գոտթաց, որոց յաղթեալ զօրութեամբ դարձաւ ։,,

2 Տիւրիւյ, Պատմ. Հռովմ. Հտր. Է, էջ 397 ։

3 Մ. Խորենացի այնպէս լաւ իւրացուցած է Մաղաղայ տուած յաջորդութեան կարգն, որ զՍ. Ներսէս երկու անգամ Բիւզանդիոն գացած կը պատմէ, նախ Վաղեն-

համառօտութիւնն է միայն։ Մ. Խորենացի պատմելէն ետքը թէ տէրութիւնն անցաւ Վաղենտինիանու եղբօր, անմիջապէս կը յիշէ Վաղէսի դարձը. միայն յոյնէն այս մանրամասնութիւնը լաւ կրնայ հասկցուիլ՝ անոր պատմելովն թէ Վաղէս Կ. Պոլիս չէր, երբ ինքնակալ հռչակուեցաւ, եւ խաւրուած էր իր եղբօրմէ Գոթաց դէմ պատերազմելու, եւ դարձաւ — (ὑπέστρεψε) անոնց յաղթելէն ետքը։ Վերացընելով երկու հեղինակաց պատմածներուս անպատմական ըլլալը, այսպիսի նշան մը վկայ է հայոյն յունէն կախում ունենալուն։

ԺԳ.

| Մ. Խոր. Գ. 33. | Մաղաղաս, էջ 342: |
|---|---|
| . . . (Վաղէս) | . . . τοῦ οἰκήματος τοῦ ἀγροῦ |
| հրակէզ եղեալ յԱդրիանուպոլիս | ἀδήλως ἀναφθέντος καὶ ἀναφθέντων τῶν σκαλῶν νυκτός, |
| սատակեցաւ։ | ἀπώλετο (Βάλης) μετὰ τῶν κουβικουλαρίων καὶ σπαθαρίων αὐτοῦ.[1] |

Հոս կարեւորն ոչ այնչափ բնագրաց նմանութիւնն է՝ որչափ Վաղէսի մահը պատմելու եղանակը։ Գիտենք որ ինքնակալս Ադրիանուպոլսոյ դժբախտ պատերազմին (9 Օգոստ. 378) մէջ կորսուեցաւ. կ՚ըսուի թէ նետէ մը խոցուած՝ տարուեցաւ խղճիկ մ՚որուն կրակ տուին Գոթք։ Մեր այս երկու հեղինակք պատերազմը չեն յիշեր. մանաւանդ թէ Մա-

---

տինիանու (թէպէտ սա Արեւմուտք կը նստէր), եւ յետոյ Վաղէսի ժամանակ (Գ, 21 եւ 29։) Փաւստ. Բուզանդացի մի միակ ճամբորդութիւն մը գիտէ Ս. Ներսէսի ի Կ. Պոլիս. (Դ, գլ. 5 եւն։)

1 «. . . Քանզի տուն գեղջն գաղտ հրկէզ եղեւ եւ այրեցան դեզք խոտոց գիշերայն, սատակեցաւ (Վաղէս) հանդերձ սենեկապանօք եւ սուսերապահօք իւրովք։»

ղաղասի պատմածը՝ որ արդէն մթին է՝ բոլորովին կ'արտաքսէ պատերազմը։ Վաղէս, կ'ըսէ, փոխադրուեցաւ յԱդրիանուպոլիս շինութեան մը պատճառաւ։ Այն խղիկն՝ ուր իջեւանած էր, կրակ առաւ՝ առանց գիտցուելու (ἀδήλως) թէ ինչպէս. եւ որովհետեւ կրակը սանդուխն այրած լափած էր, հրկէզ եղաւ ինքնակալն իրեններուն հետ։ Մովսէս երբ Վաղէսի մահուան վրայ կը խօսի՝ ուրիշ աղբիւր մ'առջեւն ունեցած չ'երեւար, բայց եթէ յոյն ժամանակագիրս. եւ այս կրնայ ցուցուիլ անով որ հայերէնին մէջ աւոր անմիջապէս յաջորդող նախադասութիւնք բառ առ բառ թարգմանութիւն են Մաղաղասէն, ինչպէս այժմ պիտի տեսնուի։

Ժ Դ.

| Մ. Խոր. Գ, 33. | Մաղաղաս, էջ 344, 19–20: |
| --- | --- |
| Նա քակեաց զմեհեանս կռոցն | Τοὺς δὲ ναοὺς τῶν Ἑλλήνων πάντας κατέστρεψεν |
| մինչեւ յատակս՝ | ἕως ἐδάφους ὁ αὐτὸς Θεοδόσιος βασιλεύς. |
| զփակեալսն ի սրբոյն Կոստանդիանոսէ, | [Κωνσταντῖνος . . . τὰ ιερὰ μόνον ἔκλεισεν καὶ τοὺς ναοὺς . . .][1] |
| | Մաղաղաս, էջ 345, 12—19: |

1 Փակագծի [ ] մէջ առնուած բառերը թերի են Մաղաղասայ այժմու բնագրին մէջ. փոխ առնուած են անոնք Զոփ. Ժամանակագրութենէն (էջ 303 Դ) որուն հեղինակն այնպիսի բնագիր մ'առջեւն ունէր որ դեռ չէր համառօտուած. Հմմտ. դարձեալ Մաղաղաս, էջ 324, տող. 1—4։ Հայերէն Լամբր. ձեռագիրն կ'աւելցընէ «փակեալն» բառէն ետքը «բոյն» բառը, որ Վենետկոյ տպագրութեան մէջ կը պակսի, բայց ստուգիւ նախնական բնագրին կը վերաբերի (τὰ ἱερὰ μόνον ἔκλεισεν.) Այս ալ նոր ապացոյց մըն է՝ բաց անոնցմէ, զոր Նորայր իւր աղբերաց քննութեան մէջ (Քննասէր, Բ, էջ 39, 40 եւն) յառաջ բերած է, հաստատելու որ Լամբր. ձեռագիրն՝ իւր ընդմիջարկութեամբքն ալ հանդերձ, կրնայ շատ լաւ ընթերցուածներ պահած ըլլալ։

| | |
|---|---|
| | . . . τοὺς τρεῖς ναοὺς τοὺς ὄντας ἐν Κονσταντινουπόλει . . . καταλύσας . . . |
| զանուանեալն Արեգական | τόν τοῦ Ἡλίου ναόν… |
| եւ Արտեմեայ | τὸν τῆς Ἀρτέμιδις ναόν… |
| եւ Ափրոդիտեայ | τὸν τῆς Ἀφροδίτης ναόν . . . |
| ի Բիւզանդիոն. | |
| | Մաղաղաս, 344, 20—23: |
| աւերեաց նոյնպէս զտաճարն | ὁμοίως δὲ καὶ τὸ ἱερὸν |
| Դամասկի, եւ արար եկեղեցի. | Δαμασκοῦ ἐποίησεν ἐκκλησίαν χριστιανῶν· |
| նոյնպէս եւ զտաճարն | κατέλυσε δὲ καὶ τὸ ἱερὸν |
| Իլուզ[1] քաղաքի | Ἡλιουπόλεως |
| զԼիբանոսի | [τὸ τοῦ Βαλανίου,][2] |

1 Այլ ընթերց. Իլիոս (տպ. Վենետ. 1865):

2 Բնագիրս կը լրացընենք ըստ Զատկ. Ժամանակ. (էջ 303 Գ), որ Մ. Խորենացւոյ զԼիբանոս բառին կը համապատասխանէ: Երկու ընթերցուածներէն որը նախամեծար ընտրելու է: Դժուարալոյծ խնդիր մըն է, որուն մասնաւոր քննութիւն մը կ'արժէ նուիրել: Յիշեալ հատուածին մէջ յիշուած «հռչակաւոր Երեքքարեան» անշուշտ Արեգական տաճարն է ի Հելիոպոլիս, յայժմու Պաալպէք. (տես Ռընան, Ուղեւորութիւն ի Փիւնիկէ, էջ 314 եւն:) Մաղաղաս այլուր կը պատմէ թէ այս «աշխարհի հրաշալիքն» (θέαμα, էջ 380) ինչպէս շինուեցաւ Անտոնինոս Բարեպաշտէն եւ Արամազդայ նուիրուեցաւ. եւ ստուգիւ այստեղ խօսքն է Պաալպէքի մեծ՝ եւ ոչ թէ փոքր՝ մեհենին վրայ, որ Արամազդայ մեհեան կը կոչուի: Հաւանական չէ որ Արեգական տաճարն Լիբանու նուիրուած ըլլայ, վասն զի Լիբան դից կամ մանաւանդ Լիբանանու Բահաղուն בעל לבנן հետքն այլուր չենք գտներ, բայց միայն պղնձեայ անօթոյ մը բեկորքին վրայ եղած արձանագրութեան մէջ, որ մեր թուականէն թերեւս Թ դար հին է (տես Corpus Inscriptionum semiticarum, Pars I, Tom. I. p. 22 եւն.) Կարելի է որ զԼիբանոսի ընթերցումն հիմնուած ըլլայ սխալ թարգմանութեան մը վրայ այն խօսքին՝ զոր Մաղաղասայ քով կ'ընթեռնունք (էջ 280) «Շինեաց ի Հելիոպոլիս Փիւնիկեցւոց Լիբանանու (ἐν Ἡλιουπόλει τῆς Φοινίκης τοῦ Λιβάνου) զմեծ տաճարն Դիայ:» Իսկ Զատկ. Ժամանակագրու-

| | |
|---|---|
| զմեծ եւ զՀռչակաւոր զԵրեքքարեանն։ | το μέγα καὶ περιβόητον τὸ λεγόμενον[1] Τρίλιθον.[2] |

ԺԵ.

| | |
|---|---|
| Մ. Խոր. Գ. 39. | Մաղաղաս, էջ 347: |
| Բայց Պապայ լուեալ եթէ | |
| մեծն Թէոդոս | Ὁ δὲ αὐτὸς Θεοδόσιος βασιλεὺς |
| եւ ի Բիւզանդիոյ | ἀπὸ Κωνσταντινουπόλεως ἐξελθὼν |
| ի Հռովմ կոյս, | ἐπὶ Ῥώμην |
| եւ մտեալ ի Թեսաղոնիկ | εἰσῆλθεν ἐν Θεσσαλονίκῃ πόλει· |
| Հանդերձ սպայիւն, | καὶ τοῦ ὄντος μετ᾽ αὐτοῦ στρατιωτικοῦ πλήθους |
| եւ յաղագս իջավանին | διὰ μιτᾶτα ταράξαντος τὴν πόλιν, |
| եղեւ խռովութիւն ընդ նա եւ ընդ քաղաքացիսն, | ἐστασίασαν καὶ ὕβρισαν τὸν βασιλέα οἱ Θεσσαλονικεῖς. Καὶ θεωρήσας ἱππικὸν |

---

Յեսան՝ Բաղանիոս (Βαλάνιος) ընելուն նկատմամբ՝ անյայտ է մեզ այս բառին ծագումը, որ այլուր չի գտնուիր եւ շատ դժուարութիւններ կը պատճառէ։ Հմմտ. Ոլքնանի մեկնութիւնը (Ուղեւ. ի Փիւնիկէ, էջ 320). եւ Պօտիսէն, (Baudissin. Jahveh et Moloch, էջ 35) եւն։

1 Ընթերցողին աւելի դիւրինցընելու համար բնագրաց համեմատութիւնը, ստիպուեցանք վերջին նախադասութեանց կարգը տեղափոխել։ Մաղաղասայ բնագրին մէջ կարգն է այսպէս. նախ κατέλυσε — τρίλιθον, եւ յետոյ ὁμοίως — χριστιανῶν.

2 “Զամենայն տաճարս Հեթանոսաց քակեաց մինչեւ յաստակս՝ Թագաւորն Թէոդոսիոս։ [Կոստանդիանոս ... փակեաց միայն զմեհեանս եւ զտաճարս ...] (էջ 344, 12—19:) ...իսկ զերեսին տաճարսն՝ որ ի Կոստանդնուպօլիս էին, ... քակեաց ... զտաճարն Արեգական ... զտաճարն Արտեմեայ... զտաճարն Ափրոդիտեայ (էջ 344. 20—23.) Նոյնպէս եւ զմեհեանն Դամասկի արար եկեղեցի քրիստոնէից. քակեաց եւ զմեհեանն Հելիուպօլսի [զԲաղանիոսի] զմեծն եւ զՀռչակաւոր զասացեալն Երեքքարեան։„

| | |
|---|---|
| եւ մարտ խռովութեան, | ἐν τῇ αὐτῇ πόλει γέμοντος |
| եւ յաղթեալ ինքնակալին՝ | τοῦ Ἱππικοῦ ἐκέλευσε τοξευθῆναι· |
| սատակեաց ի քաղաքացեացն | καὶ ἀπώλετο πλῆθος |
| արս հնգետասան հազար։ | χιλιάδων δεκαπέντε.[1] |

Հոս ալ կը գտնենք դարձեալ զՄաղաղաս եւ զՄ. Խորենացի միաբան իրարու, բայց բոլորովին հակառակ պատմաբանօրէն ուղիղ հաստատուածին։ Նախ ստոյգ է որ Թէոդոս ի Թեսաղոնիկէ չէր, երբ հոս պատմուած դէպքերը պատահեցան։ Ինքնակալն ի Միլան լսեց ապստամբութեան լուրն, որուն զոհ գացած էր Թեսաղոնիկէի պահակազօրուն հրամանատարն, եւ Միլանէն էր — ինչպէս կը վկայեն Ս. Ամբրոսիոսի թղթերը, — որ պաղարիւնութեամբ հրաման խաւրեց քաղաքին ժողովուրդը կոտորելու։ Իսկ խռովութեան պատճառը կը դնեն՝ միայն Մաղաղաս եւ աւելի կամ նուազ իրմէ ուղղակի կախումն ունեցող ժամանակագիրք՝ ինչպէս Թէոփանէս (Ը դար) եւ Կեդրենոս (ԺԱ դար), զայն՝ թէ կռիւ մը ծագեցաւ զօրաց օթեւանելու (μετᾶτα) պատճառաւ։ Նոյնն ըսելու ենք սպանելոց թուոյն նկատմամբ։ Նախ Մաղաղաս է որ 15.000 թիւը կը յիշէ, որուն կը հետեւի Զոնարաս (ԺԲ դար.)։ Թէոդորետոս՝ որ աւելի հին եւ արժանահաւատ է՝ միայն 7000 մեռեալ կը յիշէ։ Կեդրենոս երկու թուերս ալ յառաջ կը բերէ, բայց կ'երեւայ թէ նուազագոյնը կը նախընտրէ, “7000, ոմանք ասեն 15.000։„

1 “Թագաւորն Թէոդոսիոս ելեալ ի Կոստանդնուպօլսոյ ի Հռովմ կոյս՝ չոգաւ ի Թեսաղոնիկէ քաղաք. եւ քանզի որ ընդ նմայն էր զօրուն բազմութիւն յաղագս իջավանին խռովեցոյց զքաղաքն, ապստամբեցին եւ թշնամանեցին զթագաւորն Թեսաղոնիկեցիքն։ Եւ տեսեալ հեծելազօր՝ լցեալ ի քաղաքին հեծելագնդին՝ հրամայէր սպանանել. եւ կորեաւ բազմութիւն հնգետասան հազարաց։„

ԺԶ.

| Մ. Խոր. Գ. 41 | Մաղաղաս, էջ 346: |
|---|---|
| Իսկ մեծն Թէոդոս | Ὁ δὲ αὐτὸς Θεοδόσιος βασιλεὺς ποιήσας πρόχενσον |
| ելեալ ի պատերազմ, ի Միդուլանոն հիւանդացեալ մեռաւ . . . | ἀπιὼν ἐπὶ πόλεμον, ἐν Μιζουλάνῳ ἠῤῥώστησε καὶ τελευτᾷ κ. τ. λ.[1] |

Այս վերջին հատուածիս մէջ կարեւոր կէտն, որմէ կրնանք եզրակացութիւն մը հանել, այն քաղաքին անունն է, ուր մեռաւ Թէոդոս: Ի՞նչ է պատճառն որ Միլան անունը փոխանակ սովորական Մեդիոլանոն ձեւին՝ զոր Եւսեբեայ Քրոնիկոնը[2] կ'ընծայէր Մ. Խորենացւոյ, վերջինս ընտրած է անուանս այնպիսի ուղղագրութիւն մ'որ այնչափ նման է Մաղաղասայ Μιζουλάνον անուան:[3] Եթէ մեր ընթերցողքն ալ նախընթաց համեմատութիւնքն այնպէս մեկնած են՝ ինչպէս մենք, պիտի չյապաղին ուղղել ըստ յունին՝ զՄիդուլանոն ի Միզուլանոն: Եւ այս այսպէս ընելու այնչափ աւելի պատճառ կայ, որ Միդուլանոն արդէն հրատարակչաց ըրած մէկ սրբագրութիւնն է, եւ ձեռագրի մը մէջ չի գտնուիր: Արդեամբք ալ Վենետկոյ (1865ին) հրատարակութեան մէջ կը կարդանք: "Ամենայն օրինակք. ի Միւղուդանոն

---

1 "Իսկ Թագաւորն Թէոդոս, համար արարեալ զօրուն ելեալ ի պատերազմ ի Միդուղանոն հիւանդացաւ եւ մեռաւ եւն:"

2 Հրտ. Աւգերեան, Բ, էջ 168:

3 Այս ձեւն որ տարական արտաբերութեան մը արդիւնք է, երկու անգամ ալ կը գտնուի Մաղաղասայ քով, (էջ 297, տող 22, եւ էջ 298, տող. 1) ուր կը պատմուի թէ Վաղերիանոս ի Միլան սպանուեցաւ (չփոթելով Գաղիանու հետ), եւ չի գիտեր որ Վաղերիանոս գերի բռնուեցաւ Պարսիկներէն: Պէտք է յիշել որ Մ. Խորենացի ուրիշ բան մ'ըսած չէ անոր վրայ, բայց միայն թէ երկար չարչրեցաւ. ("Նոտէս ու յերկարս վշտանան." Բ, 76:)

կամ Մէղո–դոնոն կամ Մէ–ղո–դոնոն կամ Մէղո––դոնոն կամ Մէ–լո–դոնոն։„ Վերջին ընթերցուածս անշուշտ սխալ ընթերցման արդիւնք է՝ "Մէլո––դոնոն„ ձեւէ, որ կրնար կարդացուիլ "Միզուդանոն„ կամ "Միղուդանոն„ բայց ոչ՝ "Միլուդանոն։„ Այժմ անշուշտ կ՚ընդունուի որ մեր բոլոր սրբագրութիւնը շատ յանդուգն չէ։

Սակայն չենք կարծեր որ Հայերէն բնագրին նախնական ընթերցուածն Մէղո–լոնոն ըլլայ։ Միտ դրուի որ Վենետիկոյ տպագրութեան յիշած հինգ տարբեր ընթերցուածոց մէջն ալ վերջին երկրորդ վանկերը միշտ -դոնոն են։ Պէտք է ի նկատ առնուլ այս միակերպութիւնն, որ դիւրին ալ է՝ ենթադրելով որ հայ թարգմանիչը կարդացած ըլլայ MIZOYΔANON փոխանակ MIZOYΛANON, եւ տառադարձած՝ Մէղո–դոնոն։ Շատ անգամ առիթ տուած է այսպիսի սխալներու Δ եւ Λ տառերու նմանութիւնը. եւ այս կէտս հայ բնագրին ուսկից ծագած ըլլալն այլ եւս տարակուսի տակ չի թողուր։

Այս ամէն համեմատութիւններէս ելած եզրակացութիւնն՝ մեզի կ՚երեւայ թէ բաւական պայծառ կերպով ի յայտ կու գայ, այնպէս որ աւելորդ է յաւելուլ որեւէ ապացուցութիւն մը։ Առանց երկիւղի սխալելու՝ կրնանք հաստատել որ Հայերէն բնագիրը յառաջ եկած է անոր դէմ առ դէմ դրուած յունարէն բնագրէն։ Ուստի եւ Մ. Խորենացի ճանչցած եւ գործածած է Մաղաղասայ ժամանակագրութիւնը։

Մի միակ առարկութիւն մը՝ եթէ հիմնաւոր ըլլար՝ կրնար այսպիսի հետեւութիւն մը տկարացընել։ Ուստի լաւ է որ կանխաւ իսկ պատասխանենք անոր՝ մինչդեռ չէ իսկ յարուցուած։ Մեր ընդդիմաբանք պիտի ըսեն անշուշտ որ Մ. Խորենացի չէ տեսած Մաղաղասայ գիրքը, բայց

գործածած է միեւնոյն յիշատակարանն՝ զոր գործածեր է յոյն ժամանակագիրը։ Ուրիշ բառերով՝ Մովսէս եւ Մաղաղաս հասարակաց աղբիւրէ մը քաղած են։ Այս առարկութիւնն արժէք մը կ՚ունենար, եթէ ամենափոքր նշան մ՚ալ գտնուէր որ այսպիսի աղբիւրի մը գոյութիւնը յայտնէր. պայց թէ ոչ ենթադրութիւն մըն է առանց հիման։ Արդ ամենամեծ խնամքով փնտռեցինք մենք այսպիսի նշան մը, մանրամասն ուսումնասիրելով ի մէջ բերած կտորներուն ամէն մէկը։ Մեր հետազօտութիւնն ի դերեւ ելաւ։ Ամէնէն նշանաւոր կողմանց մէջ աւելի հնագոյն ժամանակ ելլել չկրցանք քան մինչեւ ի Մաղաղաս։ Եւ միտ դնելու է որ հոս խօսքը հատակոտորի մը վրայ չէ, եւ ոչ աննշանակ աղբիւրի մը։ Այն յիշատակարանը, որուն գոյութիւնն ապացուցանել պէտք էր, դատելով մեր ունեցած ծայրաքաղ համառօտութիւններէն՝ հարկ էր որ գոնէ Տակիտոսի ինքնակալէն մահուանէն (276. թիւ Բ.) մինչեւ Թէոդոս Մեծին մահը (395, թիւ ԺԶ.) հասնէր։ Արդ քանի որ ամենեւին հետք մ՚ալ մնացած չէ՝ ուղղակի կամ անուղղակի, այս միայն բաւական էր ինքնին՝ ջրելու այն ենթադրութիւնը թէ հասարակաց աղբիւր մ՚ունեցած ըլլան։

Ընդ հակառակն ի մէջ բերուած յոյն կտորներն շատ կէտերով իրարու կը նմանին. ամէնն ալ միջադէպներ պատմելու ձգտում մ՚ունին, սխալուոր եւ բարբարոսական լեզու մը՝ լի լատին եւն բառերով. այնպիսի հանգամանքներ՝ որ բոլորովին կը համաձայնին Մաղաղասայ գործքին, եւ որուն առանձնայատուկ դրոշմ մը կու տան։ Հայ թարգմանութիւնը Մաղաղասայ ժամանակագրութեան ասորի-յունական ոճոյն յատկութիւնքը յաճախ ընդգրկած է։

Մ. Խորենացւոյ գործած մէկ՝ աւելի ընդհանուր կարգի՝ սխալը թերեւս յայտնագոյնս կը

ցուցընէ թէ կախում ունի Մաղաղեայ ժամանակագրութենէն եւ ո՛չ թէ հնագոյն գրութենէ մը։ Տեսանք ԺԲ հատուածին մէջ որ Վաղենտինիանու յաջորդ կը դնէ զՎաղէս, որուն մէջ համաձայն է յոյն ժամանակագրին հետ։ Արդ այս կարգի սխալները Մաղաղեայ գործքին ամէնէն աւելի որոշիչ նկարագիրներէն են. ինք մի միակն է բովանդակ հռոմէական կայսրութեան պատմագրաց մէջ, որ չ՚ընդունիր թէ երկու ինքնակալք կրցած են միեւնոյն ժամանակ իշխել։ Այսպէս Թէոդոսի յաջորդ կը դնէ զՈնորիոս, եւ Ոնորիոսի մահուանէ ետեւ՝ զԱրկադիոս։[1] Նմանապէս Կոստանդիանու նախորդներուն յաջորդութիւնն ալ հետեւեալ կերպով ըմբռնած է. "Դիոկղետիանոսի՝ անոր հրաժարելէն ետքը՝ կը պայազատէ Մաքսիմիանոս Հերկուղէս, որ դարձեալ կը հրաժարի եւ գահը կը թողու Մաքսենտիոսի (այսինքն՝ Գաղերիոսի.) ապա կու գան յաջորդաբար Կոստանդիոս Քլորոս, Կ. Քլորոսի մահուանէն ետքը՝ Լիկինիոս, եւ Լիկինիոսի մահուանէն ետքը՝ Կոստանդիանոս Մեծն։"[2]

Կարծենք թէ այս խորհրդածութեամբք՝ զորոնք կրնայինք աւելի եւս ընդարձակօրէն պարզել, եթէ պէտք ըլլար, ի դերեւ հանած կ՚ըլլանք հասարակաց աղբիւր մը դնելու ենթադրութիւնը։ Ուստի աւելի եւս ապահովութեամբ կը դառնանք մեր յառաջագոյն հաստատածին թէ՝ Մովսէս Խորենացի բաղմաթիւ փոխառութիւններ ըրած է Յովհ. Մաղաղեայ ժամանակագրութենէն, որ առ չանառին Զ դարուն վերջին երրորդ մասէն է։[3] Եթէ Հայոց Պատմութեան ուրիշ աղբիւր չճանչնայինք, կրնայինք եզրակացընել որ այն գիրքը Զ դարուն վերջէն կամ

---

1 Մաղաղաս, էջ 349 եւն։
2 Մաղաղաս, էջ 311 եւն։
3 Մաղաղեայ հայերէն թարգմանութեան մը կարելի, եթէ ոչ հաւանական՝ գոյութիւն անշուշտ այս ժամանակամիջոցն աւելի եւս յետոյ պիտի մղէ։

Է դարուն սկիզբէն յառաջ չէր կրնար գրուած ըլլալ։ Սակայն Սոկրատայ Հայ Թարգմանութեան տարեթիւն արդէն դար մ'աւելի յետս մղած է զմեզ. եւ ցայսօր բան մը գտնուած չէ՝ որ մեր յառաջագոյն հանած հետեւութիւնքն եղանակաւորենք։ Ուստի ներկայ ուսումնասիրութեամբս միայն այն հետեւութեանց հաստատութիւնը կ'ուզենք։ Այժմ դրականապէս հաստատուած է որ անկարելի է Հայոց Պատմութիւնը Ե դարու վերջերը կամ Զ դարու սկիզբը դնել. իսկ եթէ աւանդութեան տուած ժամանակամիջոցն այլ եւս կարելի չէ պաշտպանել, չենք տեսներ ստուգիւ որեւէ գիտնական պատճառ մ'որ արգելու զմեզ զայն մինչեւ Ը դար յետս մղել։

Փարիզ, 31 Դեկտեմբեր 1893։



## Զ.

### *Մովսէս Խորենացի եւ Պրոկոպիոս:*

Սալլուստիոս՝ Յուկուրթայի դէմ մղուած պատերազմին պատմիչը, այն առթիւ իրեն կարծիքը կը յայտնէ Մաւրիտանացւոց ծագման մասին:[1] Ըստ իրեն՝ Մաւրիտանացիք սերունդ են Պարսից, Մարաց եւ Հայոց, որոնք Հերակղեայ բանակին մէջ էին, եւ այն դիւցազին մեռնելէն ետքը Սպանիայէն Ափրիկէ անցան:[2] Հինգ դար վերջը յոյն պատմիչն Պրոկոպիոս՝ պատմելով Յուստինիանու Վանդալաց դէմ մղած պատերազմը կը խօսի նոյն նիւթոյ վրայ, բայց իբրեւ քրիստոնեայ պատմիչ մ'որուն ծանօթ է իւր Աստուածաշունչը: Ըստ Պրոկոպեայ՝ Մաւրիտանացւոց նախնիք այն Քանանացիքն են՝ որ Իսրայելացւոց արշաւելովն իրենց հայրենիքէն վտարուած՝ գացին հաստատուեցան Ափրիկէի հիւսիսային ափունքը: Իրեն տեսութեան ի նպաստ կ'ելլէ իրողութիւն մ'ալ: Նումիդիոյ Տիգիսիս (Τίγισις) քաղաքին մէջ, կ'ըսէ, կը գտնուի փիւնիկերէն արձանագրութիւն մ'որ այսպէս է. "Մեք եմք փախուցեալքն յերեսաց Յեսուայ աւազակի, որդւոյ Նաւեայ:[3]"

Այս կարգի յիշատակարան մը պէտք էր պատմաբանից մտադրութիւնը սաստկապէս զարթուցանել: Ասոր համար ալ այն արձանագրու-

---

1 Վասն Յուգուրթեան պատերազմին, ԺԸ:

2 Սէն-Մարթէն երկար ուսումնասիրութիւն մը նուիրած է պաշտպանելու՝ գոնէ յեականս՝ Սալլուստիոսի կարծիքը. Հմմտ. Դիտողութիւնք Սալլուստիոսի մէկ տեղւոյն վրայ՝ Մաւրիտանացւոց պարսկական ծագման նկատմամբ ի Յիշատակարանս Ճեմարանին Արձանագրութեանց եւ Գեղեցիկ Դպրութեանց, Հատ. ԺԲ, էջ 181—256:

3 Պրոկոպիոս, Վասն Պատերազմին Վանդալաց, Բ. 10:

թիւնն՝ որուն վրայ կը խօսի Պրոկոպիոս, շատ անգամ յիշուեցաւ, մեկնաբանուեցաւ, վիճաբանութեան նիւթ եղաւ: Այսօր ոչ ոք անոր վաւերականութեան պաշտպան կ'ելլէ. եւ նոր գիտնոց մէջ միայն Շրէօտէր ծանօթ է մեզ որ հակամէտ էր ընդունելու զայն:[1] Սակայն որչափ ալ օգտաւէտ ըլլայ այսպիսի խնդրոյ մը քննութիւնը չենք՝ կրնար հոս ատոր վրայ խօսելու յօժարիլ: Մեզի կարեւորն է միայն Պրոկոպիոսի պատմածին սկիզբն ու ծագումը:

Այս պատմութիւնն աւանդող պատմագրաց առաջինն ըստ կարգի ժամանակին՝ է Եւագրիոս Զ դարուն վերջը, ինքն ալ Պրոկոպիոսի պէս այս իրողութիւնը կապած է Բեղիսարու Վանդալաց դէմ ըրած արշաւանքին հետ. բայց իր պատմութիւնը կը սկսի ըսելով թէ ոչ ոք այս բանին վրայ խօսած էր մինչեւ Պրոկոպիոսի ժամանակ:[2] Եւ սակայն լիովին հաւատք կ'ընծայէ Պրոկոպիոսի այն վկայութեան որ կը յայտարարէ թէ անձամբ կարդացած է ինքն արձանագրութիւնը.[3] ի հարկէ այսպիսի բան մը չենք գտներ բնագրին մէջ՝ որուն կ'ուղղէ զմեզ Եւագրիոս: Սակայն իրեն ըսածը մեկնելու համար պէտք չկայ ենթադրելու որ ինքն ուրիշ բնագիր մ'ունեցած ըլլայ՝ մերինէն տարբեր եւ կամ թէ այնպիսի տեղեկութիւններ ալ ունեցած իրեն տրամադրութեաններքեւ, որ այսօր կորսուած ըլլան: Պէտք է Պրոկոպիոսի պատմածը մտադրութեամբ կարդալ, եւ կը տեսնենք որ ականատես մըն է պատմողը: Գիտենք որ ինքը մասնակից էր Ափրիկէի արշաւանաց իբրեւ կցորդ Բելիսարի սպայապետաց-խմբին, ինչպէս սովոր ենք կոչել այսօր. նաեւ հռչակաւոր զօրավարին մեկնելէն ետքն ալ կեցաւ ինքը Վան-

---

1 Շրէօտէր, Փիւնիկերէն լեզուն, էջ 3:

2 Եւագր. Պատմ. Եկեղ. Դ. 8. «Ասէ (Պրոկոպիոս) եւ զայլ ինչ . . . որ չէ ուրեք պատմեալ նախ քան զնա . . .:»

3 Անդ. «որ եւ ասէ թէ ընթերցեալ իցէ զայն զգրեալն փիւնիկերէն նշանագրօք:»

դալաց ձեռքէն յետոյ գրաւեալ դաւառաց մէջ։ Երկրին մէջ ըրած իւր շրջագայութեանց ժամանակ անշուշտ այցելած է Տիգիսիս քաղաքը՝ եւ տեսած անոր հնագոյն ամրոցը (φρούριον) որուն համար կ'ըսուէր թէ Քանանացիներէն շինուած ըլլայ։ Հոն տեսած է նաեւ ողջակով մարմարէ երկու սիւները, որոնց վրայ փիւնիկական տառերով եւ Փիւնիկեցւոց լեզուաւ քանդակուած էր[1] այն արձանագրութիւնը, որուն վրայ կը խօսի։ Ծանօթ է իրեն որ այս սիւները կը գտնուէին Տիգիսիսի մեծ ողբէր մօտ։[2] Այս ամէն մանրամասնութիւնք հաւրկ է որ ամենամեծ ճշգրտութիւն ունենան, եւ ականատես վկայ մը կը մատնեն։ Բոլորովին ալ կը համաձայնին տեղեաց այժմու վիճակին հետ։ Տիգիսիսի դիրքը ճանչցուեցաւ որ այժմու Տաուրգա գիւղին տեղն է, Դեղղիւսէն իբր քսան հազարամեթր հեռու դէպ ի հարաւ-արեւելք։[3] Հին բերդին աւերակաց ստորոտն որ ցայսօր ալ գրեթէ անմասոյց կը համարուի, տակաւին կը բղխէ ակնաղբիւրը։ Զայն պատող պարսպին մէջ ագուցուած են հին բեկորներ, որոնց մէկ բարձրաքանդակն արդէն հրատարակուած է։[4] Թերեւս օր մ'ալ գտնուին հոն այն երկու սիւները փիւնիկական արձանագրութեամբ, զոր տեսած է Պրոկոպիոս։

Պրոկոպիոս բոլորովին անկարող էր փիւնիկերէն կամ կարքեդոնական արձանագրութիւն մ'ընթեռնուլ, եւ շատ հաւանական է որ նոյն

---

[1] Վասն Վանդալաց, Բ. 10 «Ընդ են երկոքին սիւնքն ի սպիտակ քարանց մերձ առ աղբերական մեծի, որ ունին նշանագիրս փիւնիկականս՝ քանդակեալ ի լեզու Փիւնիկեցւոց, որ ունին այսպէս . . .»

[2] Քիչ մ'եաքը (գլ. ԺԳ) նորէն կը յիշուի Տփղիսի աղբիւրը, որուն դիրքը շատ ճիշդ նկարագրուած է։

[3] Շատ մը նոր գիտնականք, ի մէջի այլոց Մովէրս կը շփոթեն զՏիգգիսի Տինգիսի հետ (Թանճէր։) Այս սխալին սկզբնապատճառն եղած կ'երեւայ Պրոկոպիոսի բնագրին լատին թարգմանիչը՝ Գրոտիոս։

[4] Ք. Վինէէրոն, Հռոմէական աւերակք Ալճերիոյ. Քաբիլաստան Ճուրճուրայի։ Փարիզ 1868, էջ 8 եւն։

վիճակին մէջ էին այն ժամանակ երկրին բոլոր անձինքը: Ուստի ստիպուած ենք ընդունիլ որ զոհ եղած է տեղական կարծեցեալ գիւտի մը խաբէութեան, որ անշուշտ Մաւրիտանացւոց քանանեան ծագումն ունենալուն վրայ խօսակցութիւն մ'ընելէն ետքը՝ իրեն ցուցուցած եւ մեկնած ըլլալու է արձանագրութիւն մ'որով զինքը իր կարծեաց մէջ հաստատել կարենայ: Միայն Պրոկոպիոս չէ՝ որուն այս տեսակ պատահար մը դիպած ըլլայ: Զինչ եւ իցէ՝ ամենայն վստահութեամբ իւր հնախօսական գիւտը մուծեց իրեն Վանդալաց պատերազմին վրայ գրած գրքին մէջ՝ որ լոյս տեսաւ 550 կամ 551ին:[1]

Ուստի պարզ աւանդութիւն մը չէ այն զոր կրկնած ըլլայ Պրոկոպիոս. բոլորովին նոր իրողութիւն մըն է զոր բերած է Ափրիկէի իւր արշաւանքներէն եւ որով ճոխացուց մարդկային ծանօթութիւնքն: Եւագրիոս իրաւունք ունի ըսելու որ Պրոկոպիոսէն յառաջ ոչ ոք խօսած էր այս արձանագրութեան վրայ: Բայց այն ատեն այս խնդիրը շատ կարեւոր կէտ կ'ըլլայ Մովսէսի Խորենացւոյ աղբերաց քննութեան տեսակէտէ: Արդեամբք ալ Խորենացի կը պատմէ (Ա. ԺԹ) թէ Քանանացիք՝ Յեսուայ առջեւէն փախչելով ապաստանեցան յԱգռաս (°), եւ թէ այս բանս կը հաստատուի յառաջորդ արձանագրութեամբ, զոր ցայսօր ալ կրնայ մարդ տեսնել յԱփրիկէ, քանդակուած սեան մը վրայ. "Ի Յեսուայ ելուզակէ փախուցեալ մեք նախարարք Քանանացւոց եկաք բնակել աստ:"[2]

Առաջին տեսութեամբ կը գտնենք այստեղ Պրոկոպիոսի պատմածէն քաղուածք մը: Սակայն մանրախոյզ համեմատութիւն մը կը ցուցնէ քանի մը տարբերութիւններ, որոնք արժանի են

---

1 Քրումպախեր, Պատմ. Բիւզանդեան Մատենագրութեան, էջ 42:

2 Մ. Խոր. Գիրք Ա, գլ. ԺԹ:

նկատողութեան առնուելու։ Նախ Քանանացիք բառը Պրոկոպիոսի այն տեղւոյն մէջ չկայ, ուր միայն Պաղեստինի երկու ազգեր յիշուած են՝ Գերգեսացիք եւ Յեբուսացիք. (Γεργεσαῖοί τε καὶ Ἰεβουσαῖοι.) Փախստականք այնտեղ չեն ըսուիր բնաւ թէ ըլլան Նախարարք, այլ ամբողջ ժողովուրդն (ὁ λαός) է որ կը գաղթէ երկրէն։ Ըստ Պրոկոպեայ՝ ապաստանեցան Քանանացիք ի Լիբիա (εἰς Λιβύην ἐστάλησαν). Խորենացի՝ որ այլուր Լիբիէ բառը կը գործածէ (Բ, բ) հոս ուրիշ բառեր գործածած է՝ Ափրիկէ, զոր ետքէն պիտի մեկնենք, եւ Ափրիկեցիք. այս բառերը Հայոց Պատմութեան մէջ մէյ մըն ալ չեն գտնուիր։ Խորենացի չ'ըսեր թէ սիւները երկու հատ էին, եւ Յեսու չի կոչուիր որդի Նաւեայ արձանագրութեան հայերէն բնագրին մէջ։ Կրնայինք տակաւին յաւելուլ քանի մը մանրամասնութիւններ ալ, բայց այս նախընթացն ալ արդէն բաւական է։ Ով որ ուսումնասիրած է Մ. Խորենացւոյ իւր աղբիւրները գործածելու կերպը, յայտնի է անոր որ Հայ պատմագրին պատմածն չէ ուղղակի Պրոկոպիոսի պատմութենէն։ Կամ թէ ըսենք՝ Պրոկոպիոսի գիրքը Մ. Խորենացւոյ աղբիւրն եղած չէ։ Այս երկու հեղինակաց մէջ կայ երրորդ մ'ալ, զոր պէտք ենք այժմ փնտռել։

Այն պատմագրաց շարքին մէջ՝ որոնք Պրոկոպիոսի ծանուցած իրողութիւնն եւ արձանագրութեան բնագիրը յառաջ բերած են, ոմանք՝ ինչպէս Եւագրիոս[1] եւ Թէոփանէս (իբր 810ին)[2] ճշդութեամբ կը համառօտեն իրենց գաղափարը եւ արձանագրութենէն բան մը չեն փոխեր. ուրիշները՝ օրինակի համար այն համառօտութիւնքն՝ զոր Քրամեր Յովհաննու Ասիացւոյ[3] կ'ընծայէ, եւ

1 Եկղ. Պատմ. Դ, 18.

2 Ժամանակագրութիւն (հրտ. C. de Boor) էջ 200։

3 Cramer, Anecdota graeca paris. II, 389.

Սուիդասայ Բառգիրքը՝[1] պատմութեան ինչ ինչ մասերը կերպարանափոխ կ'ընեն եւ արձանագրութեան ուրիշ բնագիր մը կու՚տան. Մենք ենք քանանացիք, զորոնք փախոփական ըստա առաղային Յեսուայ:[2] Այս վերջնոյս մէջ կը գտնենք Խորենացւոյ աղբիւրը:

Արձանագրութեան նոր բանաձեւը չունի որդի Նաւեայ բառերը, այլ ունի՝ քանանացիք: Եթէ Մ. Խորենացի նախարարք քանանացւոց թարգմանած է, առ այս ունէր նախօրինակ մը: Արդեամբք ալ թէ՛ Քրամէրի եւ թէ՛ Սուիդասայ բնագիրք չեն ըսեր թէ ամբողջ ժողովուրդը մասնակցած է այս գաղթականութեան, այլ միայն առաջք (Քրամէր՝ αἱ δυνάσται, Սուիդաս՝ βασιλεῖς καὶ δυνάσται.)

Արձանագրութեան իբր ներածութիւն կազմող տողերն ալ հետաքրքրական համեմատութեանց առիթ կու տան: Եւ որովհետեւ Սուիդասայ բնագիրն ամէնէն աւելի կատարեալն է, զայս կը դնենք յաջորդովս Մ. Խորենացւոյ հայերէնին դէմ առ դէմ:

| Մ. Խոր. Ա, ԺԹ. | Սուիդաս, Տառ. Χαναάν. |
|---|---|
| Ի սատակել սորա զՔանանացիս՝ | . . . ἐκβαλὼν πάντας τοὺς βασιλεῖς καὶ δυνάτας τῶν ἐθνῶν. οἵτινες ὑπ' αὐτοῦ διωκόμενοι διὰ τῆς παραλίου Αἰγύπτου τε καὶ Λιβύης |
| անցին ի սմանէ փախստականք | κατέφυγον |
| յԱգռաս | εἰς τὴν τῶν Ἄφρων |

1 Համառօտն Χαναάν, հրտ. Bernhardy, II, 2 հրտ. 1593ի եւն:

2 "Մեք եմք քանանացիք, զորս վտարեաց Յեսու աւազակ:"

| | |
|---|---|
| նաւելով ի Թարսիս. | χώραν . . . |
| եւ յայտնի դրոշմամբ, որ յարձանս ափրիկեցւոց աշխարհին գրեալ | καὶ ἐν πλαξὶ λιθίναις ἀναγραψάμενοι τὴν αἰτίαν δι᾽ ἣν ἀπό τῆς Χαναναίων γῆς ᾤκησαν τὴν Ἀφρικήν. |
| կան մինչեւ ցայսօր ժամանակի արդարապէս այսպէս. | καὶ εἰσι μέχρι νῦν αἱ τοιαῦται πλάκες ἐν τῇ Νουμιδίᾳ, περιέχουσαι[1] οὕτως.[2] |

Հոս կը յաջորդէ յունին եւ հայոյն մէջ արձանագրութիւնը, զոր արդէն ուսումնասիրեցինք։

Այս երկու բնագիրքն համեմատելով՝ հետեւեալ դիտողութիւնքն ընել կը ստիպուինք։

1. Աֆռոս բառը, որուն Ափրիկէի նշանակութեամբ գործածուած ըլլալն արդէն ծանօթ էր, այժմ կը մեկնուի յունարէնովս՝ εἰς τὴν τῶν Ἄφρων χώραν[3] (յերկրին Աֆրոց) կարծեմ թէ հաւանականագոյնս հայ թարգմանչին գործած մէկ սխալ ընթերցումն է այս. ապա թէ ոչ՝ զԱֆռոս պէտք է ուղղել Աֆրոս կամ Աֆրոսս։ Ստոյգ է միայն որ Աֆռոս չէր կրնար Աֆրիկէեն յառաջ գալ, ինչպէս երբեմն պնդած են։

---

1 Քրոմէրի հրատարակած բնագիրը յայտնապէս ծայրաքաղ մըն է Սուիդասէն, եւ է այսպէս. «Բնաւորք ազգաց՝ վտարեալք ի Յեսուայ Նաւեայ, եւ ոչ ընկալեալ յԵգիպտացւոց, անցեալ բնակել յերկրին Ափրիկեցւոց՝ գրեցին„. — Հոս կը յաջորդէ վերը դրուած արձանագրութիւնը։

2 «Մերժեալ զամենայն արքայս եւ զբնաւորս ազգաց. որ վտարեալ ի նմանէ՝ ընդ ծովափունս Եգիպտոսի եւ Լիբեայ փախեան յերկիրն Աֆրոց եւ ի տախտակս քարեղէնս գրեալ զպատճառս, զոր վասն ի Քանանացւոց աշխարհէն եկին բնակել յԱփրիկէ. եւ կան մինչեւ ցայսօր այս տախտակք ի Նումիդիա, որ ունին այսպէս„

3 Պրոկոպ. εἰς Λιβύην ἐστάλησαν. Թ դարուն սկիզբը Թէոփանէս կ'ըսէ գործել. "զարեւմտեանն Լիբիա, զաշխարհն՝ որ կոչի Ափրաց„, ժամանակագիր. (հրտ. C. de Boor) Ա, էջ 93։

2. Երկու բնագրաց ամէնէն նշանաւոր տարբերութիւնը կը կազմէ այն ճամբան՝ զոր բռնած են փախստական Քանանացիք: Ըստ յոյն Սուիդասայ՝ ցամաքի ճամբան բռնելով կը հասնին Ափրիկէ՝ Եգիպտոսի եւ Լիբիայի ծովափունքը (παράλιος) դառնալով: Մ. Խորենացի ընդհակառակն կ'ըսէ՝ անցին նաւելով ի Թարսիս: Տարակոյս չկայ թէ այս բանս Ա. Գրոց[1] այն նմանողութիւններէն է, որոնցմով Խորենացի իւր գործածած աղբիւրներն մեծ յօժարութեամբ կը ճոխացընէ:[2]

3. Սա բառերը ᾤχησαν τὴν Ἀφρικὴν կը մեկնեն Մ. Խորենացւոյ տուած արձանագրութեան վերջին մասը՝ Եկեալ բնակել աստ:

4. Անկարելի է՝ երկու բնագրաց վերջին նախադասութիւնքն համեմատելով՝ չճանչնալ երկուքին նմանութիւնը, գրեթէ նոյնութիւնը:

Ուստի ստիպուած ենք հաստատել թէ անձուկ ազգակցութիւն կայ Սուիդասայ բնագրին եւ Մ. Խորենացւոյն մէջ: Կ'ըսենք ուղղակցութիւն, եւ ոչ կախումն: Նախ Խորենացի չէր կրնար գործածել Սուիդասայ գործքը, որ Ժ դարուն կէսերը կը գրէր:[3] Պատճառներ կան՝ զորոնք աւելորդ է հոս յառաջ բերել, որ կ'արգելուն զմեզ այս չափ յետս մղելու Հայոց Պատմութեան յօրինման ժամանակը: Ասկէ զատ քանի մասնականութիւնք խորհել կու տան որ հայն չունէր իր առջեւն յոյն բառագրին ունեցած բնագրին բոլորովին նման բնագիր մը: Օրինակի համար՝ արձանագրութիւնը Պրոկոպիոսի եւ Խորենացւոյ քով

---

1 Յովնան Ա, 3 "Նաւել ի Թարսիս:"

2 Անցողակի մատնանիշ կ'ընենք Հայ պատմագրին ուրիշ մէկ յանցանքը: Ըստ անոր բոլոր քանանացի նախարարք չուեցին ի Թարսիս: Ասոնցմէ մին՝ Հռչակաւորն Քանանիդաս (— "Յորոց մի էր Քանանիդասն" —) հակառակ ուղղութիւնը բռնելով՝ կու գայ կը հիմնէ ի Հայս այս երկրին մէկ մեծ գերդաստանը: Այս ալ աղբերաց հոյակապագոյն մէկ նշխարն է, ինչպէս սովոր է ընել մեր հեղինակը:

3 Քրոնոգրաֆէր, Պատմ. բիւզ. մատենագր. էջ 261:

սեանց վրայ գրուած է (στῆλαι, Խոր. սիւնք) ըստ Սուիդասայ տուած բնագրին քարէ տախտակաց վրայ (ἐν πλαξὶ λιθίναις) էր[1]։ Ընդհակառակը նոյն բնագիրը տախտակներ կ'ըսէ՝ ինչպէս Խորենացի սիւներ (սիւնք), առանց անոնց թիւն որոշելու ինչպէս ունի Պրոկոպիոս (στῆλαι δύο)։

Ուստի պէտք է դիմել ենթադրութեան հասարակ աղբիւրի մ'երկու հեղինակաց։ Թէ Մ. Խորենացի եւ թէ Սուիդաս կը հետեւին Պրոկոպիոսի պատմածին մէկ նոր խմբագրութեան, զոր հաւանականագոյնս ժամանակագիր մը յիշողութեամբ միայն ըրած էր. եւ անտարակոյս երկուքն ալ քանի մ'եղանակաւորմունք ըրած են իրենց առջեւն եղած բնագրին վրայ։

Ո՞րն է այս հասարակաց աղբիւրը։ Այս նկատմամբ ամենեւին տեղեկութիւն մը չունինք։ Յօժարակամ կ'ընդունինք որ Մաղաղայայ կորսուած մէկ հատակտորն ըլլալու է, զոր մերթ ընդ մերթ կ'օրինակէ Սուիդաս, եւ որուն այժմու բնագիրն շատ կրճատուած է այն տեղն՝ ուր Բելիսարի արշաւանքը պիտի պատմուէր։[2]

---

1 Πλάξ կը համապատասխանէ հայերէն տախտակին։

2 Արդեամբք ալ Մաղաղաս բաւական մանրամասնութեամբ կը պատմէ Գեղիմերի յափշտակութիւնն (էջ 459), որ տեղի տուաւ պատերազմին։ Ետքը (էջ 478) կ'ըսէ մեզ թէ ինչպէս Բելիսար զՎանդալաց թագաւորը գերի բերաւ ի Կոստանդնուպոլիս։ Սակայն բառ մ'ալ չ'ըսեր այն պատերազմական գործողութեանց նկատմամբ, որոնց յանգեցաւ Ափրիկէի աշխարհակալութիւնը։ Այստեղ ապահովապէս պակաս կտոր մը կայ։ — Կ'երեւայ նմանապէս թէ Սուիդասայ "Αφροι անունը գործածելն Մաղաղայայ կը տանի զմեզ։ Այս բառը (= Afri) օտար է դասական յունարէնին, եւ տակաւին չի գտնուիր Պրոկոպիոսի քով։ Պապոսի յունական անուանց Բառգիրքը (Գ. տպագր. Նորոգ աշխատասիրեալ ի Պէնսըլէր, 1884ին) "Αφροι բառին ուրիշ տեղ մը ցոյց չի տար՝ բայց միայն զՍուիդաս։ Արդ այս բառն՝ որ լատիներէն է ծագմամբ եւ այնպէս քիչ կը գործածուի Զ դարու յունարէնին մէջ, հինգ անգամ կը պատահի Մաղաղայայ այն հատակտորին մէջ, որ կը վերաբերի այն դիպաց որոնք զՅուստինիանոս մղեցին Վանդալաց դէմ պատերազմի

Զինչ եւ իցէ՝ մեր ուսումնասիրութիւնը դրական հետեւանքի մը կը հասցընէ։ Մ. Խորենացի գործածած է Պրոկոպիոսէն յետնագոյն խմբագրութիւն մը, եւ վերջինս չէ կանուխ քան Զ դարուն կէսերը։ Որովհետեւ Պրոկոպիոսէն յառաջ ոչ ոք Քանանացւոց արձանագրութեան վրայ խօսած է, աւելի հաստատուն կռուան մը կ'ունենանք քան Մովսէսէն եղած բազմաթիւ կոչմունքն, որ թոյլ կու տայ մեզ հաստատելու թէ Հայոց Պատմութեան մէջ յիշատակարաններ կան՝ որոնք ամէնէն կանուխ մինչեւ Զ դարուն երկրորդ կէսը կը հանին։

---

Վերջին խօսք մ'ալ։ Արդէն հասած էի եզրակացութեան իմ հետազօտութեանցս, որոնց հետեւութիւնքն այժմ իսկ հաղորդեցի, երբ գտայ անոր հաստատութիւն մ'որ ինծի համար շատ մեծ յարգ ունի։ Արդէն քառասուն տարի կայ որ լուսաբանուած էր այն ապացուցման գլխաւոր կէտը, այսինքն թէ Պրոկոպիոսի պատմութիւնը կանխագոյն է քան Մ. Խորենացւոյնը։ Մովերս՝ Փիւնիկեցւոց մեծանուն պատմիչը՝ 1850ին հրատարակած մէկ գրքին մէջ զբաղած է Տիգիսիսի արձանագրութեամբ։ Իրեն ալ հանած եզրակացութիւնք կը նոյնանան իմիններուս հետ։ Համեմատելով Պրոկոպիոսի եւ Մովսիսի պատմածները, կը հետեւցնէ թէ Խորենացի այստեղ ընդմիջարկութիւն մը կրած պիտի ըլլայ, այսինքն յետնագոյն ձեռքէ կտոր մ'աւելցած։ Իրեն այս բանս անով աւելի հաւանական կ'երեւար որ Խորենացւոյ այս կտորը, կ'ըսէ, կրնայ դուրս հանուիլ իւր տեղէն, առանց բնագրին թերի մնալուն։[1] Մովերսի կարծիքը կ'ե-

---

ձեռնարկելու (էջ 459)։ Դժուար է այստեղ պարզ զուգադիպութիւն մը տեսնել։

1 Մովերս, Փիւնիկեցիք, Բ, 2, էջ 428 եւ մանաւանդ՝ էջ 433։

րեւայ թէ ցայսօր անծանօթ մնացած է Հայագիտաց. գոնէ չեմ գտներ զայն տեղ մը յիշատակուած ։

Մեր նախորդ ուսումնասիրութիւնք թոյլ կու տան աւելի ընդհանուր հետեւութիւններ հանել նոյն խրողութիւններէն ։

Փարիզ, 18 Փետրուար 1894:



